# ԿՈՎԿԱՍԵԱՆ ԼԵՌՆԵՐԷՆ





ՈՒՂԵԳՐԱԿԱՆ

ԻՒ

ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

ԱԿՆԱՐԿՆԵՐ



ԳՐԵՑ

Կ. ՏԻԻՐԵԱՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1896.

# ԿԱՒԿԱՍԵԱՆ ԼԵՐԱՆՑ ՄԷՋ

## ՈՒՂԵԳՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

### ԱԿՆԱՐԿՆԵՐ

---

ԳՐԵՑ



Կ. ՏԻՒՐԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1896.

# ԿԱՒԿԱՍԵԱՆ ԼԵՐԱՆՑ ՄԷՋ

## Ա.

Ընձրեւոտ օդով, երեկոյեան ուշ ժամանակ, շոգեկառքը մտաւ Վլադիկաւկասի կայարանը։ Ամբողջ 5 օրուան երկաթուղւոյ շարժուն եւ փակ կեանքէն ձանձրացած, վերջապէս այն գիշերը հաստատուն բնակարան պիտի ունենայի։ Առանց երկար տատանելու, իրեղէններս առի եւ առաջին հանդիպած կառքը նստելով մտայ քաղաք։ Կառքը բերաւ զիս տեղւոյն լաւագոյն պանդոկը, Hôtel d'Europe, ուր փոքր սենեկի մը մէջ առժամն տեղաւորուելէն վերջ, ստիպուած էի դարձեալ դուրս ելլել։ Հարկաւոր էր պատրաստութիւն տեսնել հետեւեալ օրուան ուղեւորութեան համար։ Պիտի մեկնէի Տփղիս. եւ միակ ուղղակի ճանապարհը Կաւկասեան լեռներն էին, որոնք չնայելով ռուսական՝ մօտ միադարեայ տիրապետութեան, դեռ յամառօրէն կ'ընդդիմանային եւ չէին թողուր որ երկաթի եւ շոգւոյ միացած ոյժը գայ ոտնակոխ անէ իրենց կուսական մեծայաղթ բարձունքը եւ լանջքը։ Կաւկասեան լեռնաշղթան երկու մասի կը բաժնէ Կաւկասն եւ դեռ եւս երկաթուղի չկայ կառուցուած, այս

երկու մասերն իրար միացընելու համար։ Այս կերպով Անդրկաւկասն, այսինքն Տփղիսն իր շրջակայ նահանգներովը շոգեկառքի ճանապարհով կապուած չէ դեռ բուն Ռուսաստանին։ Միայն ձին է որ կը շարունակէ իշխել, որ կը բարձրանայ եւ կը տանի իր հետ ուղեւորներն մինչեւ լերանց հսկայական գագաթն եւ կ՚իջեցընէ անկէ Անդրկաւկասի հովիտը, Կուր գետի շուրջը։ — Այս լեռնային ճանապարհը 200 քիլոմէտրէն պակաս չէ։ Այս 200 քիլոմէտր (ճշդագոյնը՝ $199\frac{3}{4}$ վերստ, 205 քիլ.) ճանապարհն անցնելու համար թէ Թիֆլիսէն Վլադիկաւկաս եւ թէ Վլադիկաւկասէն Թիֆլիս, օրը 2 անգամ հանրակառք կ՚ելլէ՝ մէկն առաւօտեան ժամը 8ին, որ գիշերը կ՚անցընէ կէս ճանապարհի կայարանի մը մէջ եւ հետեւեալ օրն երեկոյին կը հասնի իր տեղը, եւ միւսը կէսօրէն վերջը, ժամը 3ին, որ առանց դադար առնելու, ամբողջ ժամանակը յառաջ կ՚երթայ եւ նոյնպէս հետեւեալ օրը երեկոյին կը հասնի իւր տեղը։ Այս հանրակառքերը կառավարութեան հսկողութեան տակ են եւ որոշ կանոններու ենթարկուած։ Բայց ով որ կամենայ կրնայ ոչ շատ բարձր գներով յատուկ իրեն համար առանձին կառք վարձելով նոյն ճանապարհաց վարչութենէն՝ եւ իր ուզած կերպով յառաջանալ։ Ճանապարհին սարերու բարձանց եւ լանջքին վրայ, 11 կայարան կայ հաստատուած, ուր թէ կառքերու ձիերը կը փոխուին եւ թէ ուղեւորները կը հանգստանան։

Այս կայարաններու մէջ կան բաւական լաւ ճաշարաններ եւ գիշերելու սենեակներ։ Այս ճանապարհը պաշտօնական անունով ռազմավիրական այսինքն "վրացի-պատերազմական" ուղի կը կոչուի (военно - грузинская дорога) որովհետեւ նախնապէս պատերազմական նպատակաւ է շինուած հիւսիսային Կաւկասէն Վրաստան մտնելու համար։

Այն իրիկունն իսկ ես տեղ մի վարձեցի հանրակառքի մէջ, ուր 4 հոգի պիտի նստէինք. ուղեկիցներս որո՛նք էին, չգիտէի։ — Բայց այս բաւական չէր. հարկաւոր էր մտածել նաեւ զգեստեղէնի մասին։ Ես կազմ՝ եւ պատրաստ չէի ձիւնապատ սարերու վրայ ճանապարհորդելու. ուստի հետեւեալ առաւօտ առաջին գործս եղաւ երթալ, ճանապարհի յարմար զգեստ ճարել. ժամանակ չկար մուշտակ պատուիրելու. պէտք էր ուրեմն բաւականանալ տեղական տաք հագուստով։ — Գնեցի մի Բուրկա (бурька), որ թաղեայ երկար վերարկու է, մի մորթի գլխարկ, մի ասուեայ գլխանոց, շալ, տաք ձեռնոցներ, եւ սիրտս հանգստացաւ մտածելով, որ այդ պատրաստութեամբ կրնայի մինչեւ Կազբեկի կամ՝ Էլբրուզի (Կաւկասի ինչպէսնաեւ Եւրոպայի ամենաբարձր լեռը, 18.570 ոտք) բարձունքն ելլել։ Կառքը պիտի մեկնէր կէսօրէն վերջ ժամը 3ին, ուստի դեռ բաւական ժամանակ ունէի քաղաքը դիտելու։ Վլադիկաւկաս[1] Եւրոպական Ռուսաստանի՝ հետեւա-

---

[1] Ցեղացի լեռնական ժողովուրդը տարբեր անուն

երկու մասերն իրար միացընելու համար։ Այս կերպով Անդրկաւկասն, այսինքն Տփղիսն իր շրջակայ նահանգներովը շոգեկառքի ճանապարհով կապուած չէ դեռ բուն Ռուսաստանին։ Միայն ձին է որ կը շարունակէ իշխել, որ կը բարձրանայ եւ կը տանի իր հետ ուղեւորներն մինչեւ լերանց հսկայական գագաթն եւ կ'իջեցընէ անկէ Անդրկաւկասի հովիտը, կուր գետի շուրջը։ — Այս լեռնային ճանապարհը 200 քիլոմէտրէն պակաս չէ։ Այս 200 քիլոմէտր (ճշդագոյնը՝ 199$^{3}/_{4}$ վերստ, 205 քիլ.) ճանապարհն անցնելու համար թէ Թիֆլիսէն Վլադիկաւկաս եւ թէ Վլադիկաւկասէն Թիֆլիս, օրը 2 անգամ հանրակառք կ'ելլէ՝ մէկն առաւօտեան ժամը 8ին, որ գիշերը կ'անցընէ կէս ճանապարհի կայարանի մը մէջ եւ հետեւեալ օրն երեկոյին կը հասնի իր տեղը, եւ միւսը կէսօրէն վերջը, ժամը 3ին, որ առանց դադար առնելու, ամբողջ ժամանակը յառաջ կ'երթայ եւ նոյնպէս հետեւեալ օրը երեկոյին կը հասնի իւր տեղը։ Այս հանրակառքերը կառավարութեան հսկողութեան տակ են եւ որոշ կանոններու ենթարկուած։ Բայց ով որ կամենայ կրնայ ոչ շատ բարձր գներով յատուկ իրեն համար առանձին կառք վարձելով նոյն ճանապարհաց վարչութենէն՝ եւ իր ուզած կերպով յառաջանալ։ Ճանապարհին սարերու բարձանց եւ լանջքին վրայ, 11 կայարան կայ հաստատուած, ուր թէ կառքերու ձիերը կը փոխուին եւ թէ ուղեւորները կը հանգստանան։

Այս կայարաններու մէջ կան բաւական լաւ ճաշարաններ եւ գիշերելու սենեակներ։ Այս ճանապարհը պաշտօնական անունով ռազմավի-րական այսինքն "վրացի-պատերազմական„ ուղի կը կոչուի (военно - грузинская дорога) որովհետեւ նախնապէս պատերազմական նպատակաւ է շինուած հիւսիսային Կաւկասէն Վրաստան մտնելու համար։

Այն իրիկունն իսկ ես տեղ մի վարձեցի հանրակառքի մէջ, ուր 4 հոգի պիտի նստէինք. ուղեկիցներս որո՛նք էին, չգիտէի։ — Բայց այս բաւական չէր. հարկաւոր էր մտածել նաեւ զգեստեղէնի մասին։ Ես կազմ՝ եւ պատրաստ չէի ձիւնապատ սարերու վրայ ճանապարհորդելու. ուստի հետեւեալ առաւօտ առաջին գործս եղաւ երթալ, ճանապարհի յարմար զգեստ ճարել. ժամանակ չկար մուշտակ պատուիրելու. պէտք էր ուրեմն բաւականանալ տեղական տաք հագուստով։ — Գնեցի մի Բուրկա (бурька), որ թաղեայ երկար վերարկու է, մի մորթի գլխարկ, մի ասուեայ գլխանոց, շալ, տաք ձեռնոցներ, եւ սիրտս հանգստացաւ մտածելով, որ այդ պատրաստութեամբ կրնայի մինչեւ Կազբեկի կամ՝ Էլբրուզի (Կաւկասի ինչպէսնաեւ Եւրոպայի ամենաբարձրլեռը, 18.570 ոտք) բարձունքն ելլել։ Կառքը պիտի մեկնէր կէսօրէն վերջ ժամը 3ին, ուստի դեռ բաւական ժամանակ ունէի քաղաքը դիտելու։ Վլադիկաւկաս[1] Եւրոպական Ռուսաստանի՝ հետեւա-

[1] Ցեղացի լեռնական ժողովուրդը տարբեր անուն

բար եւ Եւրոպայի՝ սահմանին վրայ է, եւ իր հիմնարկութիւնն է շնորհիւ այն պարագային, որ դուռն է ռազմավիրական ճանապարհին, որ ինչպէս վերը յիշեցի, Եւրոպան Ասիայէն բաժնող Կովկասեան լեռներու վրայէն կ՚անցնի, եւ կը տանի ուղեւորը դէպի Անդրկովկաս, յԱսիա։— Կանխապէս այսինքն հազիւ 100 տարի յառաջ փոքր գեղ էր լեռնական Օսեթիններէ բնակուած, եւ ռուսական բանակին ապահովութեան համար հսկայ բերդ մը դարձաւ, եւ հետզհետէ աճելով վերջապէս 1860ին քաղաք հռչակուեցաւ եւ եղաւ գլխաւոր քաղաք Տէրէքի նահանգի։ Բայց Վլադիկավկասը յառաջացաւ մանաւանդ՝ երբ 1875ին երկաթուղւով կապուեցաւ ներքին Ռուսաստանի, եւ Թիֆլիսի ճանապարհին վրայ ալ երթեւեկութիւնն աւելի կանոնաւորուեցաւ։ Այժմ քաղաքը 45.000 բնակիչ ունի եւ զարդարուած է բուլվառով, քաղաքական այգիով եւ քանի մի բաւական գեղեցիկ շէնքերով. ունի 20էն աւելի դպրոց՝ 3ը միջնակարգ, ունի իր սեպհական թերթը՝ Терскія Вѣдомости, որ շաբաթը 3 անգամ կը հրատարակուի. ունի իւր թէատրոնն, որ թէպէտ շատ երեւելի բան չէ, բայց դարձեալ իւր նմանը Թիւրքիայի մայրաքաղաքին մէջը չկայ։ Տէրէք գետը՝ այս Կովկասեան լերանց զաւակը որ մերձակայ առուակները միացուցած՝ սարերու

---

կու տայ քաղաքին, ի հնուց Նօղայները կը կոչեն “Կապկայ„ որ կը նշանակէ՝ վտանգաւոր տեղ, իսկ Օսէթինները կ՚անուանեն իրենց լեզուով՝ լէրանց նախադուռն, որ աւելի ճիշդ կոչում է։

Հովիտներու մէջ կատաղի կերպով կը հոսէ՝ Վլագիկաւկասին մօտ հրաժեշտ կու տայ իր ծնող լեռնաշղթային եւ արձակ դաշտ ելլելով այնտեղ կը յամրացնէ իւր ընթացքն եւ խաղաղ կերպով կու գայ երկուքի կը բաժնէ քաղաքը: Վլատիկաւկասի բնակիչները գլխաւորաբար՝ դադարման վիճակ առած ռուս զինուորներու, ներքին Ռուսաստանէն եկած գաղթականներու եւ շրջակայ լեռներէն իջած Օսէթիններու սերունդն են: Մեծամասնութիւնն, ուրեմն, ռուս է. իսկ Հայոց թիւն այստեղ 2000ը չ'անցնիր, որոնք ունին իրենց եկեղեցին եւ ուսումնարանը. իրենց մեծ մասը առեւտրական եւ արուեստաւոր է:

Կէսօրէն վերջ ժամը 3ին մեր իրեղէններով միասին նստած էինք արդէն հանրակառքն որ զմեզ պիտի տանէր լեռները: Չեմ կարող ասել թէ շատ հաճելի ընկերներ ունէի: Կառքի մէջ 4 հոգի էինք, չորսս ալ միմեանց անծանօթ եւ տարբեր ազգութենէ. մէկը չէրքէզ էր, որ կը պարծենար թէ իր կինը եւ նշանաւոր Շէյխ Շամիլինը քոյր են, միւսը վրացի ազնուական՝ արուեստով գինեվաճառ, երրորդը ռուսմանրավաճառ, չորրորդն ալ ես էի. կար հինգերորդն եւս, բուն օսէթին, որ դուրսն էր նստած կառապանին քով, իբրեւ աւելի աժան տեղ:

* * *

Կաւկասի նորագոյն պատմութեան մէջ մեծ դեր կը խաղայ Շէյխ Շամիլ, ուստի կ'արժէ որ այստեղ՝ մեր կարգը ճամբայ չելած՝ համառօտաբար ծանօթացընենք զինքը մեր ընթերցողներուն: — Կաւկասեան լերանց անբեր եւ վայրի ձորերուն մէջ բնակող զանազան ցեղերը, ինչպէս Չէրքէզներ, Չէչէններ եւ Լէզգիներ՝ իրենց սովորական գործ էին արած ի սկզբանէ ի վեր անընդհատ յարձակիլ դաշտային ժողովրդեան վրայ, կողոպտել եւ ապրիլ ասպատակութեամբ: Երբ Ռուսներն անցեալ դարու վերջը կատարելապէս հաստատուեցան Հիւսիսային Կաւկաս, եւ ապա 1801ին ամբողջ Վրաստանը միացընելով Ռուսաստանին, նաեւ Անդրկաւկասը ձեռք ձգեցին, աշխատեցան վերջ դնել լեռնականներուն ասպատակութեանցն եւ զիրենք ամէն կողմէն սկսան նեղը դնել: Լեռնականները՝ կրօնով մահմետական՝ դիւրաւ չհպատակեցան Ռուսաց, եւ իրենց անկախութիւնը պահպանելու համար՝ կրօնական պատերազմ հրատարակեցին եւ խմբովին ոտք ելան՝ իրենց առաջնորդ ունենալով Կաշի-Մօլլա անունով շէյխը: Այս լեռնային կռիւը, որ ծանօթ է պատմութեան մէջ՝ իբրեւ "Կաւկասեան պատերազմ„ ամբողջ կէս դար տեւեց եւ վերջացաւ միայն 1864ին: — Կաշի մօլլան բռնուեցաւ եւ սպաննուեցաւ 1832ին եւ իր տեղն անցաւ նախ ոմն Համզաթ-բէյ եւ ապա Շամիլ, որ Ռուսաց բոլոր ջանքերուն հակառակ պատերազմը շարունակեց անդուլ ու անդադար, 1834էն մինչեւ 1859: — Շամիլ կարողացաւ

իր դրօշին տակ հաւաքել բոլոր լեռնային ցեղերը, որոնց մէջ փոքր ի շատէ կանոնաւոր վարչութիւն եւ բանակ կազմեց, եւ յանուն մահմետական շէյխանի գործելով՝ ահագին իշխանութիւն եւ բացարձակ հեղինակութիւն ունեցաւ անոնց վրայ: Այս քառորդ դարի միջոցին, եղաւ ժամանակ, երբ Շամիլ 60.000 մարդէ բաղկացած բանակի գլուխ էր. Նա այն վայրենի ժողովրդեան մէջ՝ լեռներու ստորոտին՝ մինչեւ անգամ ձուլարան հիմնեց, ուր թնդանօթ կը ձուլէին, եւ շատ գեղեր ալ վառօդի պատրաստութեամբ էին զբաղած: Իր թնդանօթաձիգներն ու ճարտարագէտները փախստական ռուս զինուորներ էին, որոնք իրենց այն ծառայութեանը փոխարէն առատ վարձատրութիւն կ՚ընդունէին իրմէ: Իսկ դրամ կը գտնէր՝ կամ Վրաստանը կողոպտելով եւ կամ Ռուսաց փողատար սուրհանդակներուն վրայ յարձակելով: Շամիլի օգնական հրամանատարներուն մէջ առանձնապէս կը յիշուի Հաճի-Մուրատ անունով լեռնցին, որու անունն եւ գործերը փառաւորող օպէրէտ (opérette) ալ կայ շինուած ռուսերէն լեզուով եւ կաւկասեան եղանակներով. (որուն ներկայացման ես քանի մի անգամ առիթ եմ ունեցած գտնուելու): Այս կռիւներու ժամանակ Շամիլ հայ վաճառականի մը՝ Մոզդոկցի Ուլուխեանի ընտանիքը գերի տանելով կարգուեցաւ անոր Աննա անուամբ աղջկան հետ, զոր ապա ինք Շուանէթ կոչեց: Այս հայ կինը Աննա - Շուանէթ՝ Շամիլի կանանց գլխաւորն

եւ ամէնէն աւելի սիրուած ու յարգուած ամուսինը դառնալով մեծ ազդեցութիւն ունեցաւ առ հասարակ անոր վրայ։ Միշտ ճիշդ կը մնայ գաղղիական առածը՝ cherchez la femme. 1842ին Շամիլ մեծ պարտութիւն կրեց փոքր զօրաբաժնէ մը, որուն հրամանատարն էր հայազգի իշխանն Արղութեան-Երկայնաբազուկ. բայց դարձեալ կարողացաւ ամրանալ ու կռուիլ։ Կուրի դաշտը, Շամիլի ապաստանարանները անմատչելի սարեր ու կրճեր էին, այս՝ եւ ճանապարհներու կատարեալ պակասութիւնն, ու տեղական այլ անհամար անյարմարութիւններ՝ մեծ դժուարութիւն կը պատճառէին ռուսական զօրքին, որ անտանելի նեղութիւններով ու կորուստներ կրելով՝ ի հարկէ շատ քիչ յաջողութիւն կ՚ունենար, եւ պատերազմն այսպէսով անվերջանալի կը դառնար։ Այն ժամանակ Ռուսերն իրենց կռուի եղանակը փոխեցին եւ փոխանակ այս կամ այն կրճի, լեռան եւ այլ ամրութեան վրայ յարձակումներ գործելու եւ ուղղակի ճակատամարտներ տալու, որոշեցին ընդարձակ պաշարման վիճակի մէջ դնել բովանդակ ապստամբ նահանգը՝ Դաղըստանն, յարմար տեղեր մշտական ամրութիւններ կառուցանել եւ փոքր առ փոքր բայց միշտ հաստատուն քայլերով յառաջանալ երկրին ներսերը։ Այս նոր եղանակն ալ 10 տարիէն պակաս չտեւեց, բայց վերջապէս յաջողութիւն ունեցաւ։ Լեռնցիք ամէն կողմէ նեղ վիճակի մէջ դրուելով՝ սկսան մի առ մի լքանել զՇա-

մի՛ն եւ անձնատո՛ւր լինել Ռուսաց։ Շամիլ դարձեալ չվհատեցաւ եւ գնաց ապաստանեցաւ Գունիբ աւանը, զոր մեծապէս ամրացուց եւ երկար ատեն դէմ դրաւ յարձակումներուն։ Իւր քով մնացած էր միայն 400 մարդ եւ 4 թնդանօթ, Ռուսներու ստուար բանակին դիմաց, որ զինքն երկաթէ պարսպի նման պաշարած էր, այլ եւս դիմադրութիւնն անհնարին էր։ 1859ին Օգոստ. 25ին Ռուսները պաշարմամբ առին Գունիբը, եւ Շամիլ անձնատուր եղաւ Ռուսաց։ Այս "Կաւկասեան պատերազմին" մասնակցեցան բոլոր այն հայ զինուորական պաշտօնակալներն, որոնք յետոյ իբրեւ զօրապետ այնքան մեծ անուն հանեցին. ինչպէս Իշխ. Արղութեան, Իշխ. Բէբուտեան, Լօրիս Մէլիքեան, Տէր-Ղուկասեան, եւ այլն։ Նոյն իսկ Շամիլը գերի բռնողն ու Գունիբը առնող գնդին հրամանատարը հայ էր։ — Ռուսական կառավարութիւնը մեծանձնութեամբ վարուեցաւ Շամիլի հետ։ Իր 2 որդիներէն մէկը ի Կ. Պոլիս Սուլթանին թիկնապահն է այժմ Ղազի-Մուհամմէտ անունով. իսկ միւսը մնաց Ռուսաստան եւ պատիւներ ընդունեցաւ։ Շամիլի բռնուելէն ետքը անհանգիստ լեռնցիք տեղ տեղ շարունակեցին կռուիլ, բայց եւ ոչ տեղ մը յաջողութիւն ունեցան, եւ 1864ին արդէն բոլոր լեռնական ցեղերը ընկճուած էին եւ արեւմտեան Կաւկասն ալ վերջնականապէս հպատակած էր Ռուսաց։

Որպէս զի այս անհանդարտ ցեղերէն տեղական կառավարութիւնն եւ ժողովուրդը մի

անգամ ընդ միշտ ապահով եւ հանգիստ մնան, ռուսական կառավարութիւնն որոշեց հանել զիրենք այն լեռնային վայրերէն եւ բնակեցընել աւելի դաշտային տեղեր կասպից ծովուն եզերքին մօտ, իսկ իրենց թողած տեղերուն վրայ գաղթեցընել ռուս գիւղացիներ եւ կոզակներ։ Լեռնականներու մեծ մասը չհամաձայնեցաւ այս տեղափոխութեան եւ լաւագոյն համարեցաւ բոլորովին հեռանալ թէ՛ Կաւկասեան լեռներէն եւ թէ՛ նոյն իսկ Ռուսաստանէն։ Կառավարութիւնը հաւանութիւն տուաւ, եւ 1858էն մինչեւ 1865 կէս միլիոնէն աւելի մահմետական լեռնցի, չէրքէս, չէչէն, լեզգի եւ այլն թողին իրենց նախահարց բնակութեան տեղիքն եւ գաղթեցին Թիւրքիա, որ զիրենք ընդունեցաւ եւ բնակեցուց իւր եւրոպական եւ ասիական նահանգներուն մէջ, բայց ատոնց ոչ փոքր մասը՝ իրենց նոր հայրենեաց մէջ չկրցան հանգիստ կեանք վարել, ապրուստի եւ այլ զրկանքներ կրելով ջնջուեցան գնացին։

Այժմեան ռուսահպատակ լեռնցիներու եւ առ հասարակ բովանդակ Կաւկասիոյ մէջ Շէյխ Շամիլի անունը մեծ յարգանքով կը յիշուի. իւր ցեղակիցները մանաւանդ, դեռ երկար ժամանակ պիտի պահեն անոր յիշատակը, ինչպէս նաեւ ռուսական տարեգրութիւնը։

## Բ.

Մ՝եր լեռնցի կառապանը մտրակը շաչեցուց երկու զոյգ ձիերու մէջքին եւ մեր կառքն

արագօրէն սկսաւ սլանալ Վլադիկաւկասի փողոցներուն մէջէն, եւ քանի մի վայրկեան վերջը մենք արդէն ռազմավիրական ճանապարհին վրայ էինք, երեսներս դէպ ի Կաւկասեան լեռնաշղթան ուղղած: — Շատ չտեւեց, մօտանք Ցերէք եւ Արագվա գետերու ձորը: Մեր դիմացն ունէինք Իլ սարն, որ մինչեւ իր գագաթը ծածկած էր անտառով, եւ իր ետեւէն մեզ ցոյց կու տար ուրիշ բարձրաբերձ գագաթներ՝ հաճակ սպիտակ սաւանով պատած. որով միեւնոյն ժամանակ մեր աչքին կը պարզուէին միմեանց կատարելապէս հակապատկեր տեսարաններ. մէկ կողմէն կանաչապատ դաշտ, ուսկից մենք կ'անցնէինք, մեր երկու կողմն ունենալով դալարագեղ այգիներ, որոնց մէջէն վեր կը բարձրանային յաղթանդամ սօսիներ (peuplier blanc) եւ ակացիաներ (acacia), եւ միւս կողմէն ձիւնապատ հսկայական լեռնագաւառ, որ հրապուրիչ կերպով մեզ կոչում կ'անէր եւ ուր արդէն կը դիմէինք: Մեր քովէն կը հոսէր Ցերէք գետն զոր Շոպէն "կանանց գետ„ կ'անուանէ. որովհետեւ իր ամբողջ ընթացքը կանանց անուններու հետ կապուած է:[1] Այս կերպով մենք կ'երթանք

[1] Իր աղբերակունքը կը կոչուին Ջօխօ-յօտ-եփէ, որ տեղացւոց լեզուով կը նշանակէ "Կուրծքերու լեռ„, կ'առօգանէ Ջեչենաստանն կամ Կէօդ-եփէն, որ կը նշանակէ "կուրծքերու երկիր„ եւ կը պատէ Ցարկու = "կանանց լեռ„ գիւղն՝ համանուն սարի լանջքին վրայ, իւր թեւերու վրայ ունի Քըղ-Բօրօն = "կուսական բլուր„, եւ իր մէջ կ'ընդունի Կօմօ = "հարսներու գետ„: Վրացիք Ցերէքը կ'անուանեն Լօմէխի, որ կը նշանակէ "տեսակցութեան տեղ.„ եւ վերջապէս Ցերէքի բերնին մօտ կայ

8 քիլոմէտր եւ ապա ճանապարհը կը բերէ կը նետէ զմեզ բոլորովին լերանց գիրկը. դաշտը հեռացաւ մեզմէ. այսուհետեւ Կաւկասեան լեռնաշղթան է որ կ՚ընդգրկէ մեր կառքը, հետզհետէ աւելի եւ աւելի տանելով զմեզ դէպ ի վեր, դէպ ի իւր բարձունքը, մէկ բլրէն միւսը, մէկ սարէն միւս սարը: — Ճանապարհին աջ կողմը վայրենի բնութիւնն է որ կ՚իշխէ. ահագին ժայռեր՝ ամրապինդ պատնէշի նման հսկայօրէն կը բարձրանան դէպ ի վեր: Բայց որ զարմանալին է, մեր վերեւ յիշած անտառապատ բլուրները կատարելապէս անմարդաբնակ են, իսկ այն ժայռոտ երկիրը՝ կարգ մը լեռնցիներու բնակավայրն է, որոնք ապառաժներու մէջտեղերը կամ գլխին՝ ցիր ու ցան տարածուած փոքր դաշտերը մշակելով կ՚ապրին, թէեւ վերջին աստիճանի աղքատօրէն: — Այս կողմը միանգամայն կրային հողի երկար խաւ մը կը տիրէ, եւ թէ՛ այս հողին, թէ՛ ժայռերու մէջ աստին անդին կ՚երեւան խորունկ քարայրներ, որոնք հաւանականաբար լեռնաբնակ հովիւներուն իբրեւ ապաստանարան կը ծառայեն:

Արդէն 13 քիլոմէտրի չափ հեռացած էինք Վլադիկաւկասէն, երբ մեր կառքը կանգ առաւ առաջին կայարանի առջեւ, որ Բալթա կը կոչուէր: Այս տեղ փոխուեցան մեր թէ՛ ձիերն եւ թէ՛ կառապանը. եւ փոխանակ 4ի՝ 6 ձի

մի հայաբնակ քաղաք Ղըզլար անունով այսինքն "աղջիկներ" կամ "կուսանոց": Հանգուցեալ Յովհ. Իզմիրեանց, որու հաստատած մրցանակն յայտնի է ամենուն, յօգուտ ազգային մատենագրութեան, — այս Ղզլար քաղքէն էր:

լծուեցաւ կառքին, որովհետեւ այսուհետեւ պիտի սկսէինք անդադար դէպ ի վեր ելլել, մինչեւ սարերու բարձունքը: — Կայարանի գլխին, սարի վրայ գիւղական բնակութիւն են հաստատած Ինգուշ կոչուած լեռնցիք: Բալտայէն վերջը, ճանապարհը կը մտնէ ձորի մէջ եւ կը նեղնայ, իսկ ժայռերը տեղ տեղ դարձեալ կը շարունակուին, նաեւ Տէրէք մեզ կ'ընկերանայ, բայց ոչ այնպէս հանդարտօրէն, ինչպէս էր Վլադիկաւկասէն դուրս ելած ժամանակ, այլ տեղւոյն յարմար, աղմկալից, եւ կը սկսի զգացընել իւր կատաղութիւնը թէեւ դեռ բոլորովին անզուսպ չէ: — Քիչ վերջը մեր կառքը կ'անցնէր ապառաժուտ կամարի մը տակէն կրաքարի մեծ բաժին մը ամպհովանւոյ նման յառաջացած էր ճանապարհի վրայ եւ սպառնալիքով կը դիտէր զմեզ՝ երբ մեր 6 ձիերը առանց ուշադրութիւն դարձընելու այն կէս տունէլին (tunnel) մէջէն եռանդով կը սահեցընէին մեր կառքի անիւները դէպ ի յառաջ:

Յետոյ մեր առջեւ կ'ելլեն, ձախ կողմը, հովտի մէջ կանգնած ընդարձակ ամրութիւններ — Ջէրախովեան կոչուած (Джераховское укрѣпленіе) որոնց 50ի չափ կոզակ պահապանները՝ ռազմավիրական ճանապարհը կը պաշտպանեն աւազակ լեռնցիներու դէմ: Ամրութիւններու շրջակայքը այս ու այն կողմը Ինգուշներու[1] քանի մի ողորմելի խրճիթներ

---

1 Ինգուշները Չեչեններու մէկ ցեղը կը համարուին եւ 40 հազարի չափ են ընդ ամէնը: Կաւկասեան լեռնաբնակ-

կ'երեւան։ Այստեղ կատարուած հնագիտական պեղումներու ժամանակ գտնուած են զանազան հին ոսկեղէն առարկաներ, հեթանոսութեան դարերէ մնացած, եւ ի մէջ այլոց մի մեծ եղըն-գնաքար (onyxe) Բ—Գ դարու Յ. Ք.։

Կառքին մէջ լեռնցի ուղեկիցս, Շամիլի քեննեկալը, սկսաւ պատմել մեզ կիսակատար ռուսերէն լեզուով Շամիլի կռուէն զանազան դէպքեր, միշտ խորին հիացման բացագանչու-թիւններով համեմելով իր զրոյցները։ Իր ասե-լով, ինքն ալ մասնակցեր է պատերազմին, բայց դեռ պատանի հասակի մէջ, եւ իր ցոյց տուած քաջութեան շնորհիւ արժանացեր է կին առնել իրեն սէգ չէյխին քեններէն մէկը։ Եւ որով-հետեւ ինքը՝ Թիֆլիսի մէջ յատկապէս Բուր-կայի եւ փափախի խանութ է ունեցեր, ուստի իբրեւ մասնագէտ, յանկարծ իր պատմութեան թելն ընդհատելով սկսաւ իմ բուրկաս կամ Յափընջաս զննել, հետաքրքիր էր թէ ի՞նչ եմ վճարեր, եւ Շամիլը թողնելով Յափընջայի վրայ սկսաւ

---

ներու մէջ այս ցեղը ամէնէն աւելի հակեալ է աւազակու-թեան. իրենց մի մասը մահմետական է իբր թէ, բայց իրօք իրենց կրօնը քրիստոնէութեան, հեթանոսութեան ու մահմետականութեան խառնուրդ մի է։ Իրենք կ'ապրին շատ ողորմելի կերպով. Ձմեռը պանիր եւ մածուն, ամառը ձմերուկ եւ սոխ՝ գարւոյ կամ սիմինտրի հացով. — ահա իրենց ամբողջ կերակուրը։ Վրաց թագաւորութեան ժա-մանակ այս լեռնցիք կատարեալ պատիժ էին դաշտաբնակ Վրացիներու գլխին եւ իրենց դրացի Օսեթիններու հետ միացած ճանապարհորդներ եւ գեղեր կը կողոպտէին եւ կ'աւարէին։ Շամիլի պատերազմներու ժամանակ՝ Շամիլին չենթարկուեցան, այլ իրենք առանձին, իրենց հաշուին աւազակութիւն կ'անէին։ Բայց ռուս կառավարութիւնը Շամիլի ընկճելէն վերջը իրենց դէմ շատ խիստ միջոցներ ձեռք առաւ, որով աւազակութեան արուեստն զգալի կերպով ինկաւ իրենց մէջ։

ճառել. իրմէ տեղեկացայ թէ Նաֆընջըան միշտ հարկաւոր է եղեր ճանապարհորդին՝ թէ՛ ցրտի եւ թէ՛ մանաւանդ անձրեւի ժամանակ, եւ կը զարմանար թէ ինչո՞ւ շատերը կը բաւականան միայն տաք պալթոյով կամ մուշտակով եւ չեն փաթթուիր միանգամայն այն թաղեայ վերարկուին մէջ, ուրպէս զի գոնէ իրենց մուշտակը կամ պալտօն միշտ մաքուր մնայ եւ անձրեւէն չվնասուի։ Իմացայ նոյնպէս, որ ամէնէն ընտիր եափընջաները Կողարդըն կոչուած լեռնցի ցեղին պատրաստածն է. իսկ իմ առածս Հասան-Քալէ անուանի (նոյնպէս լեռնաբնակ) գիւղացիներու շինածն է եղեր, որովհետեւ աւելի բարակ էր եւ աւելի թեթեւ։ Կապարդինեան եափընջան, կ'ասէր մասնագէտ լեզգին, աւելի խիտ եւ միանգամայն աւելի կակուղ է, աւելի աշխատանք կ'արժէ, այս պատճառով ալ աւելի սուղ կը գնահատուի։

Թէ՛ ուղեկիցներս եւ թէ՛ ես, չորսս ալ եափընջաներու մէջ էինք փաթթուած, եւ լեզգին մի առ մի համեմատութեան դնելով բոլորիս հագածը, այն եզրակացութեան եկաւ, որ մեր երեքի բուրկաներն ալ իր ունեցածէն լաւ էին, չնայելով՝ որ ինքը բուն ծախողն է այն լեռնական վերարկուի։ Ասուած է թէ կօշկակարը կօշիկ չ'ունենար, կամ գոնէ ամենալաւ կօշիկը չի հագնիր։ Լեզգիին դասախօսութիւնը վերջացաւ երբ հասանք նոր կայարան մը, Լարս անունով։ Կառքը կանգ առաւ. եւ ձիերը լուծեցին, նորերը լծելու համար։ Կառապանը գար-

ձեալ պիտի փոխուէր, պիտի ետ երթար Բալտա կայարանը, ուստի գլուխը խոնարհեցընելով մօտեցաւ մեզ (баринъ, ямщику пожалуйте начаи = Բարին եմշչիկու պաժալույտէ նաչայ), “Պարոն, կառապանին խմողչէք (pourboire) շնորհեցէք„ ասաց. հանեցի քանի մի կոպէկ դրի ձեռքը եւ հեռացաւ. այնուհետեւ ամէն անգամ որ նոր կայարան կը հասնէինք եւ կառապանը կը փոխուէր՝ ամէն փոխուող միշտ կը դիմէր մեզ միեւնոյն խնդիրքով, եւ բնականաբար գոհացում կ'ունենար, ինչպէս սովորութիւնն էր։

Երեկոյեան ցրտէն պատսպարուելու համար մտանք կայարան, եւ մէկ բաժակ տաք թէյով գրգռեցինք մեր ստամոքսը։ Կայարանը քանի մի ուրիշ ուղեւորներ կային Թիֆլիսէն եկող. “Երջանիկ մարդիկ, կ'ասէի մտքիս մէջ, դուք 2—3 ժամէն պիտի հասնիք ձեր ուղեւորութեան նպատակին, Վլադիկաւկաս. իսկ մենք դեռ մեր ճանապարհի 10երորդ մասն ենք միայն կատարած. դեռ ամբողջ մի գիշեր ու մի ցորեկ ունինք մեր առջեւ մինչեւ Թիֆլիս։ Երբ դուք այս գիշեր քաղաքի մէջ տաք անկողնոյ մէջ կը հանգստանաք, մենք՝ Եւրոպան Ասիայէն բաժնող լեռնաշղթային գլուխը պիտի անցընենք մեր գիշերը՝ հաւանականաբար ձիւնի բուքի մէջ թափառելով։„ Այս հեռատեսիլ պատկեր (perspective) շատ հաճելի չէր, բայց ուրիշ հնար չունէինք, պէտք էր համակերպիլ եւ հոն դիմել։ Սա մխիթարութիւնն ունէի գոնէ, որ

պէտի տեսնէի վայրենի բնութիւնն իր բնական դիրքին մէջ, եւ իբրեւ ականատես դիտող, ուղեւորութեանս յիշատակարանի մէջ՝ Կովկասեան բարձրագագաթներուն ալ պէտի կարողանայի քանի մի տող նուիրել, թէեւ կրելու ցուրտին եւ անհանգստութեանց դիմաց՝ այս մխիթարութիւնը շատ մեծ չէր կրնար համարուիլ...։ Այս խորհրդածութեան ժամանակ մեր հանրակառքի պաշտօնական առաջնորդը (conducteur) որ ըստ կանոնի անփոփոխ պէտի ընկերանար մեզ մինչեւ Թիֆլիս, եկաւ յայտնեց թէ կառքը պատրաստ է, եւ մենք դարձեալ մտանք իր հսկողութեան տակ։

## Գ.

Մտած ենք Դարիալի հռչակաւոր ձորն եւ մեր երեք զոյգ ձիերը դժուարութեամբ կը ձգեն կառքը. Ճանապարհը թէեւ լայն է՝ բայց միշտ եւ հետզհետէ աւելի ու աւելի դէպ ի վեր կ՚ելլէ։ Ձորին այս մասը՝ ռազմավիրական ճանապարհի ամենահետաքրքրականն է. այստեղ մարդ չի կրնար բնութեան ահեղ եւ վիթխարի տեսարանները դիտել առանց խորին հիացում զգալու։ Ռուս հեղինակ մը հետեւեալ կերպով կը պատկերացընէ այս պատմական ձորի տեսիլը։

"Ես ոչինչ կը ճանչնամ այս ձորէն աւելի հոյակապ, կը գրէ ռուս ճանապարհորդը. այստեղ ամէն ինչ մեծայաղթ է։ Ամէն քայլ՝ երկրի կարողութիւնն երեւան կը հանէ։ Լեռնային տեղեր՝ անսովոր բարձրութենէ

գրեթէ ուղղաձիգ կերպով վար իջնալով ամէն կողմէն կը նեղեն ձորը, ըստ երեւութին ոչ մի տեղէն ոչ մուտք կայ ոչ ելք։ Սա տեսակ մը նեղ, մանուածապատ կորիդոր (corridor) է, որու մէջ մարդ ինքզինքն անզօր, անկարող էակ մը կը զգայ։ Կարծես թէ օդը կը պակսի, երբ մարդ ձորը կը մտնէ՝ կարծես թէ բան մը զինք կը ճնշէ, եւ նա՝ ակամայ, անգիտակցօրէն, շնչառութիւնը կը փութացնէ, իրեն ներկայացող տեսարաններէն ապշած եւ շփոթած։„

“Դարաւոր հսկաները մռայլ եւ դաժան, կանգնած կը մրափեն աներեր խաղաղութեան մէջ։ Անոնց հազարամեայ բաց, հպարտ լանջքըն անվկանդ կը պահպանէ իր մէջ ծածկուած գաղտնիքը։ Այս բարձրաբերձ լեռներն, իրենց՝ ձիւնէ թագերով պսակուած բարձունքէն՝ գոռոզ կերպով կը դիտեն շրջապատը, կարծես իրենց սպառնական մեծութեամբն հպարտացած։ — Ասոնք մրցակից չունին. միայն մրրիկներն եւ ձիւնի փոշիներն են, որ իրենց հետ ապարդիւն կռիւ մղել կը յանդգնին։ Այս “պահապան հսկաները„ վար կը թօթափեն իրենց վրայէն պաղ, ճերմակ ծածկոցը՝ շնորհելով զայն խորունկ վիհերու եւ ծերպերու, եւ ամբողջ տարիներ այն վերարկուի տակ ծածկած կը պահեն զանոնք։„

“Այստեղ կեանքի նշաններ չեն երեւար. միայն արծիւն է, որ եթերային բարձրութեանց մէջ սաւառնելով մի վայրկեան երեւան կ'ելլէ

եւ կամ արագաթեւ ծիծեռնակն, որ շտապաւ հեռու հեռու կը դիմէ„:

“Դարեալի ձորը՝ կատարեալ լռութեամբ լի հսկայական դագաղի մը պիտի նմանէր, եթէ վարն, անհուն խորութեան մէջ պղպջակող Տէրէքն իր կատաղի մռնչիւնովն ամբողջ այս ահեղ կիրճը չաղմկէր: Բայց Տերեքն ալ անոր կը ներդաշնակցի իր վայրենի մեծութեամբը: Տեսէք ինչպէս կատաղօրէն կը նետուի նա՝ մէկ ժայռէն միւս ժայռը, կը ցատկէ, ժխորներ կը հանէ, կը մռնչէ, կը փրփրայ եւ անսովոր ուժով կը ձգտի իր անձուկ անկողնէն դուրս պրծնիլ. իր պղտոր, մոխրագոյն կոհակները կարծես ժայռերու վայրենի բնութիւնն իրենց մէջ կը ցայտեցնեն„:

“Հարաւային երկինքն որ նեղ շերտի նման, միայն վերէն իր կապոյտ դէմքը կը ցուցնէ, լոյս չ'արձակեր Տերեքի մէջ: Աստղերը չեն համարձակիր ներս նայիլ եւ նոյն իսկ պայծառ արեգը հոն իր խտտղիչ ճառագայթները չի խաղացներ„:

“Ահագին քարեր ջրաղացի նման պտտցընող այս հզօր գետին սոսկալի կարկաչը սարսափ եւ անհուն շփոթութիւն կը պատճառէ ուղեւորին: Կատաղած առիւծի նման նա մէկ տեղէն միւս տեղ կը նետուի, վայրագօրէն կ'ոստոստէ իր անկողնին մէջ ցրուած խոշոր ժայռերու վրայ, ետ կը ցատկէ փրփրած, գոռալով եւ թաւ կուրծքը սարի պէս վեր բարձրացընելով, եւ ապա կրկնապատիկ ուժով դարձեալ

կը նետուի, կը հասնի մինչեւ այս ժայռերու ամենաբարձր կէտերը, եւ անկից՝ իբրեւ մռնչող ջրվէժ կը խոյանայ անդունդի մէջ, կամ սուր հովէ մը յափշտակուելով ադամանդային փոշւոյ նման իր շուրջը կը տարածուի[1]"։

Ահա այս ձորի մէջէն մենք կ՚անցնէինք երեկոյեան մթին. մեր ականջները լիք էին Տերեքի հանած ժխորով։ — Ամէն ուղեւոր անպայման կերպով կը հիանայ բնութեան այս վերին աստիճանի գոռող եւ վայրենի դիրքին, մանաւանդ նա, որ մանկութենէն անսովոր է լեռնային տեսարաններու։ Երբ 1888ին Ռուսաց կայսրն Աղեքսանդր Գ. եկաւ Վլադիկաւկաս, յատուկ զբօսանք մը կատարեց այս ճանապարհի վրայ, գլխաւորաբար նոյն ձորը տեսնելու համար։ Ռուսաց երկու մեծագոյն բանաստեղծները Պուշկին եւ մանաւանդ Լերմոնթով, որոնք երկար ժամանակ բնակած են Կաւկասիա, նոյնպէս հիացած էին եւ ընտիր քերթուածներ են նուիրած Դարեալի կիրճին։ — Կիրճին երկու կողմի բնական ահեղ պարիսպները օձակճի (marbre serpentine) եւ հատաքարի (granit) ապառաժէ է կազմուած։ Պատահած է, որ Դարեալի ձորն անսպասելի կերպով, յանկարծ փակած է իր անցքը եւ այս կերպով կտրած ամէն յարաբերութիւն Կաւկասիոյ երկու մասերուն մէջ։ Ցանցաւորը Կաւկասեան լեռնաշղթայի հսկան Կազբէկն է եղած, որ իր սառուցապատ եւ չա-

[1] Залѣсовъ, Картинки Кавказа էջ 48։ Զալեսով, Կաւկասի տեսարանները։

փազանց ծանրաբեռնած լանջքէն՝ ժայռերու, ձիւնի եւ սառուցի ահագին կոյտ մի է թաւալած ձորին մէջ, որ ծածկած է զայն մինչեւ 300 ոտք բարձրութեամբ: Այս թաւալումը սոսկալի կռիւ է յառաջ բերած իր եւ Տերեք գետի մէջ: Գետն ի սկզբան անակնկալ կերպով դադրած է հոսելէ եւ ահագին տարածութեամբ ետ մղուած ու լճացած: Բայց յետոյ՝ բոլոր ուժովը յարձակելով իրեն դէմ կանգնած անբնական թումբին վրայ, տակէն, մէջէն կամ քովերէն ճեղքած եւ սոսկալի դղրդոցով քշած տարած է առջեւէն, մինչեւ մերձակայ հովիտները, անցած տեղերին ամբողջապէս ողողելով եւ ամենայն ինչ աւերելով:

Կառքի մէջ ուղեկիցներս՝ փաթթուած իրենց եափընջաներու մէջ, Հիւսիսային Կաւկասի Գրօզնի քաղաքի տօնավաճառին վրայ կը խօսէին, որ զիս շատ քիչ կը հետաքրքրէր. ուստի թեւս բարձի վրայ դրած, ընկղմեցայ մտախոհութեան մէջ: Յիշողութեանս մէջ նորոգուեցան քանի մի պատմական դէպքեր, որ տեղի են ունեցած այս կրճերու եւ յատկապէս Դարեալի ձորին մէջ, ուսկից այն միջոցին կ'անցնէինք[1]:

---

[1] Դարեալ անունը՝ ինչպէս մեկնած է Պետերբուրգի ակադեմիայի արեւելագէտ անդամ † Բրոսէ՝ պարսկական դէր կամ Դարէ Ալան دارآلان, որ կը նշանակէ Ալանաց դուռն: Այս մեկնութիւնը հաստատութիւն կը գտնէ նաեւ արաբացի պատմիչներէ (Աբուլֆէդա), որոնք Դարեալի անցքը՝ Բաբ-ալ-Ալան بابآلان կ'անուանեն որ միեւնոյն իմաստն ունի: Իսկ Ստ. Օրբելեան, չենք գիտեր ո՛ր տեղէն առնելով Ջաոանին-կող կ'անուանէ, որ բոլորովին տարբեր կոչում է:

Կը մտաբերեմ պատմական Ալաններն, որոնք, այս կիրճէն անցնելով մտան հին Հայաստանի հիւսիսային նահանգը, Վրահայք, եւ կը սպառնային իրենց արշաւանքն յառաջացնել դէպ ի հարաւ։ Ալաններու այս արշաւանքը՝ մեր պատմութեան ամենէն աւելի կարդացուած էջերէն մէկն է․ եւ ո՞վ է, որ նոյն իսկ բերանացի չի գիտեր Արտաշէսի եւ Սաթինիկի հանդիպումն եւ այս հանդիպման վախճանը, որ բերած հասուցած են մեզի ժամանակին երգիչներուն քանի մի գողտրիկ տողերը։ Ալաններու եւ իրենց դաշնակից լեռնցիներու ու Վրացիներու դէմ Հայոց Արտաշէս Թագաւորը սահմանագլուխն էր դիմած իր բանակով։ Երկար ժամանակ պատերազմներ մղուեցան մինչեւ որ Ալանաց Թագաւորի որդին գերի ինկաւ Հայոց ձեռքը։ Եւ որպէս զի արքայազուն պատանին իր ծնողներուն վերադարձուի, հարկ եղաւ, որ իր քոյրն ասպարէզ ելլէ։ Եւ ահա Կուր գետի հիւսիսային ափէն Սաթինիկ կը դիմէ յաղթական Արտաշէսին եւ եղբօրն ազատութիւնը կ'աղերսէ այնպիսի գրաւիչ խօսքերով, որ Հայոց Թագաւորն ակամայ կը հրապուրուի․ բայց փոխանակ պատանին արձակելու “աչագեղ„ քոյրն ալ կ'ուզէ ունենալ, ոչ իբրեւ գերի, այլ “ի կնութիւն„։ Եւ երբ լեռնաբնակ ցեղի արքային հպարտութիւնը շարժելով մերժեց այս առաջարկութիւնն, այն ժամանակ “Արի արքայն Արտաշէս հեծաւ ի սեաւն գեղեցիկ եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,

եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝ ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց եւ (թէպէտ) շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին„, բայց բերաւ իր բանակը։ Վերջապէս Ալանաց թագաւորը՝ հարկադրուած կը համաձայնի իր դուստրը կնութեան տալ։ Սիրահարած Արտաշէսը փառաւոր հանդէսով կը կատարէ իր հարսանիքը։ "Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեանն Սաթինկան„։ Սակայն խնդիրն այստեղ չփակուեցաւ։ Սաթինիկի հօր մահուանէ ետքը, Հայոց զօրքերն երկրորդ անգամ Կաւկասի վրայ լերանց մօտերն երեւցան, այս անգամ թագուհւոյն եղբայրը պաշտպանելու համար իր հակառակորդներուն դէմ։ Սմբատ սպարապետ մեծ յաղթանակ կանգնեց Վրացիներու եւ իրենց դաշնակից լեռնականներու դէմ, նուաճեց Կաւկասը մինչեւ Կասպից ծովն եւ բազմաթիւ գերիներով դարձաւ Հայաստան...։ Այս է մեր հին պատմութեան մեզի թողած յիշատակն ըստ Խորենացւոյ. բայց որչափ կերպարանափոխուած է երկիրն այդ թուականէն վերջը...։ Ալաններու յիշատակն այժմ՝ Դարի-Ալանի կրճին եւ աւերակ ամրութիւններու վրայ միայն կը մնայ։

— Այս անցքիս հետ կապ ունեցող պատնէշներ կան Դարեալի ձորին մէջ, թէեւ հիմայ արդէն կիսաւեր եւ տեղ տեղ աշտարակներու ստորին պատերը միայն կանգուն մնացած։ Այստեղ, այս՝ երբեմն անառիկ դիրք ունեցող

փղեկի մէջն Վրացիք ամբողջ 3 տարի բանտարկած պահեցին Արտաշէսի որդիներէն մէկը, Զարեհ, Հայոց հիւսիսային զօրքի գլխաւորը, զոր յաղթած էին գերի բռնել: — Արծին այս նեղ անցքին վրայ էր կախուած ըստ Պլինիոսի, "Կովկասու ամուր դուռը", որ կառուցուած էր հաստ գերաններէ եւ պատած էր երկաթով: Այժմ դրան փոխարէն, քիչ աւելի վեր՝ կամուրջ մը կայ, որուն անունը՝ տեղացիներու մէջ "Սատանայի կամուրջ է", իսկ պաշտօնական կոչումով "Աղեքսանդրեան-Դարեալեան": Իսկ վերոյիշեալ հին դղեկին փոխարէն, գետին միւս եզերքին վրայ նոր ամրութիւններ են շինուած, ուր 50 հոգիէ բաղկացած Քոզակներու խումբ մը՝ շուրջը կը հսկէ, որ Ալաններու եւ անոնց ցեղակից ուրիշ լեռնցիներու սերունդները չհամարձակին նորոգել իրենց նախահայրերուն աւազակային արշաւանքը, ինչպէս սովորութիւն ունէին դարուն միջինքն եւ աւելի մօտ ժամանակներ: Այժմեան լեռնականները գլխաւորապէս զբաղած էին՝ կրճէն անցուդարձ անող կառաւանները կողոպտելու եւ ուղեւորները սպաննելու: Բայց ռուս Քոզակները յաջողած են արմատախիլ ընել լեռնցիներու այն պատմական յատկութիւնը:

Այս խորհրդածութիւններով զբաղած ժամանակ մեր կառքն արագութեամբ յառաջանալով արդէն դուրս էր ելել Դարեալի կրճէն. ձորը հետզհետէ կը լայննար. իսկ մենք կը շարունակէինք միշտ դէպ ի վեր բարձրանալ: Ճա-

նապարհն այստեղ ուղղակի ժայռի մէջ էր շինուած։ Վիթխարի ապառաժն ուղղակի իր մէջտեղէն կտրուած եւ հարթացուած էր՝ կէս մասը վերէն կատարեալ ամպհովանի մը կը ձեւացնէր ճանապարհի վրայ. իսկ վարի մասը, հարիւրաւոր ոտք խորութեամբ կ՚իջնէր դէպ ի գետը։ Այդ ապառաժի կտորներէն ոմանք, որ վառօդի ուժով բաժնուեր են իրենց իրանէն, շատ տարօրինակ ձեւեր են առեր. մէկը մինչեւ անգամ եգիպտական սփինքսի կը նմանէր։

Ճանապարհը տեղ տեղ ձիւնով ծածկուած էր արդէն. որչափ աւելի վեր կ՚ելլէինք դէպ ի լեռնային գագաթները, այնչափ ցուրտն եւ բուքը կը սկսէին իրենց ազդեցութիւնը զգացնել մեզի։ Կը մօտենայինք Կազբէկի։ Վերի ձեան խաղաղ փայլն ու սպիտակութիւնը տարօրինակ հակապատկեր կը կազմէր վարի մռնչող անդնդի եւ խաւարի հետ։

Վլադիկաւկասէն ելլելէն գրեթէ 5 ժամ վերջը, հասանք Կազբէկ կայարանը. 46 քիլոմէտր տարածութիւն էինք անցած եւ ծովի երեսէն 5740 ոտք բարձրութեան վրայ էինք։

Դ.

Մուշտակներու եւ եափընջաներու մէջ ամուր փաթթուած՝ ելանք կառքէն դուրս եւ մտանք կայարան։ Ռուսական «սամօվար»ը՝ չորս բոլորտիքը բաժակներով, ահա ինչ որ ամէնէն յառաջ գրաւեց մեր ուշն ու միտքը։ Ճանապարհորդներէն ոմանք միայն տաք թէյով չբաւա-

կանանալով՝ վօդկայի գաւաթներու փարեցան, ոմանք ալ երկուսը միասին ունենալ ուզեցին։ Ամէն մարդ կ՚աշխատէր իր մարմինն եւ ստամոքսը տաքցընել ինչ կերպով որ կրնար։ — Կայարանին մէջ մեզմէ զատ ուրիշ ուղեւորներ եւս կային. բայց ասոնք իրենց համար յատուկ կառք վարձած՝ աւելի ազատութիւն կը վայելէին հնալու եւ մեկնելու, ուստի եւ անհոգութեամբ բազմոցի վրայ ընկողմանած երկար զրոյցներով էին զբաղած. ինչպէս կ՚երեւար թէյի ու վօդկայի խնդիրն իրենք վաղուց լուծած էին։ Իսկ մենք մէկ քառորդէն կամ առ առաւելն կէս ժամէն պէտք էր կամայ ակամայ մեկնէինք, որովհետեւ մենք էինք կառքին տրամադրութեան տակ եւ ոչ թէ կառքը մեր։ Ամբողջ գիշեր, թէեւ ցուրտ եւ բուք, ստիպուած էինք ճանապարհորդել, ելլելով կէս գիշերին կաւկասեան լերանց գագաթն եւ առաւօտուն դէմ իջնալով անկից։ Պաշտօնական ծրագրին համաձայն, հանրակառքը պարտաւոր էր հետեւեալ երեկոյ անպատճառ Թիֆլիս հասնիլ։

Կայարանին մէջ մեծ հաւաքածոյ կար Կազբէկի վրայէն քաղուած վանակնի (cristal), որ շատ գեղեցիկ եւ շատ մեծ կտորներ կը բովանդակէր։ Ամէն ճանապարհորդ այս կայարանն եկած ժամանակ՝ մանաւանդ օտարականները, շատ անգամ կը գնեն եւ կը տանին իրենց հետ։ Այս քարերու մէջ կան այնպիսիներ, խոշոր, զարմանալի յստակութեամբ եւ տարօրինակ ձեւերով, որոնք մինչեւ 30 ֆրանկի կը

ծախուին այստեղ. բայց փոքր սովորական կտորները կարելի է 20—30 սանտիմի գնել: Միջակ մեծութեամբ մի սիրուն վանակն ալ ես գնեցի, մօտ 2 ֆրանկ վճարելով: Թէյն եւ շոկոլային բաւական կազդուրած էր զմեզ. կըրնայինք ապահովապէս տոկալ լեռնային օդին, ուստի առանց ուշանալու ելանք դուրս, երբ մեր ciceroniն իր նոր կառապանովն եւ նոր երեք զոյգ ձիերովը կազմ եւ պատրաստ էր արդէն: Կայարանին առջեւը ցանկապատ պարտիզակ մը կար, որուն մէջ գեղեցիկ յիշատակարան մը կը բարձրանար: Յիշատակարանը՝ Դարեալի ձորին երփներանգ քարերէ քանդակուած վիմարձան մի էր, որուն երեսի կողմը փորուած էր՝ Աղեքսանդր Գ. կայսեր եւ կայս. Գերդաստանի այցելութեան թուականը՝ 1888 Սեպտ. 20:

Ուղեկիցներս շարուեր էին արդէն իրենց տեղերը կառքի մէջ. ես ալ աճապարեցի եւ կառքը շարժեցաւ: Դեռ իրենց բոլորովին թարմ ուժի մէջ՝ ձիերը մեծ փութով եւ աղմկով սկսան սըրնթաց տանիլ զմեզ: Ճանապարհը նոյն լայնութեամբ կը շարունակուէր: Բուքը դադրած էր առ ժամանակ, բայց օդի հետզհետէ նօսրանալը եւ ցրտի սաստկանալը, որ անողորմաբար կը թափանցէր ոչ միայն կառքէն այլ երբեմն նաեւ մուշտակներէն ներս, զգացընել կու տային մեզ՝ թէ ծովի մակերեւոյթն աւելի եւ աւելի կը ցածնար մեզի եւ մենք կը սաւառնէինք յաւիտենական ձիւնապատ լեռնակողերու վրայ:

Այս վիճակի մէջ քնանալ կարելի չէր, խօսելու ախորժակ չունէի, ուստի վերջին անգամ մը դարձեալ երկարօրէն դիտեցի սպիտակափառ Կազբէկի վեհախարի եւ միանգամայն վեհ ձիւնապատ լանջքն ու գագաթն, որ մեր ճանապարհին դիմաց հսկայ կը բարձրանար, եւ ընկղմեցայ դարձեալ մտածութիւններու շարքի մէջ, որ միակ անբաժանելի ընկերն է մարդուս, եւ հաւատարիմ՝ արտայայտութիւնը ուղեւորի տրամադրութեան:

Ռազմավիրական ճանապարհի ամենաբարձր սարն է Կազբէկ (16.553 ոտք), որ այս ճանապարհի երկու ծայրերէն ալ կը տեսնուի, թէ Թիֆլիսէն եւ թէ մանաւանդ Վլադիկաւկասէն, ուսկից արդէն շատ քիչ հեռաւորութիւն ունի: Կազբէկէն բարձր են Կաւկասեան գլխաւոր լեռնաշղթայի հետեւեալ գագաթները. Էլբրուս, որ ամենաբարձրն է, եւ ապա Կօշթան-թաու եւ Դըխ-թաու: Մեր պատմական Մասիսը (Արարատը՝ 16.916), որ նոյն շղթային չի վերաբերիր, նոյնպէս բարձր է Կազբէկէն:

Առ հասարակ այս բոլոր լեռներու նկատմամբ ժողովրդեան մէջ երկայն ժամանակ նախապաշարում կը տիրէր եւ մասամբ հիմայ ալ դեռ կը տիրէ՝ թէ այս սարերու գագաթներն անմատչելի են, եւ այս մասին ամէն լեռան համար առանձին աւանդութիւններ կը պատմուին:

Կաբարդինցի կոչուած լեռնաբնակները կը հաւատային՝ թէ Էլբրուսի ոտքը ճահիճներով է շրջապատուած, իսկ գագաթան վրայ ընդարձակ

քարայրի մէջ կապուած է շղթաներով ահեղ հսկայ մի։ Այս նոյն աւանդութիւնը Հայոց մէջ կը պատմուէր Մ··խ· համար, ուր "Արտաւազդ" շղթայակապ կը մնայ դեռ, թէեւ իր երկու հաւատարիմ շներն շարունակ լզելով կը մաշեցընեն շղթաները, բայց միւս կողմէն նաւասարդի օրը՝ դարբիններու միահամուռ զարկած կռաններէն երկաթեայ օղակները դարձեալ կը հաստնան։ — Ուրիշ ժողովրդական աւանդութիւն մը կը պատմէ թէ Եւֆր··· գլխին "Սիմուրգ" անունով վիթխարի թռչուն մը կը բնակի, որ մի աչքով ամբողջ անցեալը կը տեսնէ եւ միւս աչքով բովանդակ ապագան։ Երբ այս թռչունն օդ բարձրանայ, թեւերու շարժումէն մրրիկ կը գոյանայ եւ ծովը կ'ալեկոծի։ Երբեմն Եւբրուսի մշտաձիւն գագաթէն ողբագին ձայներ կը լսուին. Սիմուրգն է որ կը կռկռայ. այն ժամանակ անտառներու մէջ թռչունները կը լռեն, ծաղիկներն իրենց ցողուններու վրայ կը խոնարհին, ժայռապատ ձորերու մէջ վտակները կը մռնչեն եւ ինքն իւր փառայեղ գագաթն ամպերու մէջ կը ծածկէ։ — Երբեմն ալ ներդաշնակաւոր դրախտային ձայներ կը լսուին. այն ատեն երկինքը կը պարզի, մութ կապոյտ գոյն կը զգենու. լեռան սպիտակ ծնօտը արեւու ոսկեգոյն ճառագայթներուն մէջ կը փայլի. լեռնային առուակներն ուրախ, զուարթ կը խոխոջեն, եւ անտառը կը լեցուի անուշահոտութեամբ որ նոր կեանք կը պարգեւէ ծաղիկներուն[1]։

---

[1] Ս. Մէչ, Կաւկասիա (С. Мечъ, Кавказъ, էջ 38—39)։

Կազբէկի համար պատմուածներէն ալ յի-շեմ հետեւեալը։ Ճիշդ գագաթան վրայ կան-գնած է Աբրահամու վրանը, այնպիսի կերպասէ, որուն նմանը երբեք տեսնուած չէ երկրիս վրայ։

Վրանին մէջ, մսուրի վրայ պառկած քնած է մի մանկիկ, չորս կողմը թանկագին քարերով պատած, որոնց մէջ ցորենի հատիկներ ալ կան խառնած։ Մարդկային էակ կարող չէ, հրաման չունի այն վրանը տեսնելու։ Հազիւ թէ յան-դուգն մէկը բարձրանայ մինչեւ որոշ գիծ մը, իսկոյն կարկտախառն սաստիկ փոթորիկ կը սկսի եւ մարդը կը ստիպուի ետ դառնալ։ ԺԸ․ դա-րուն միայն, Հերակլ Վրաց արքայի ժամանակ ծերունի մի իր որդւոյն հետ, (որոնց երկուքն ալ կին չէին ունեցած) ելեր է մինչեւ գա-գաթ։ Ծերունին տեսեր է այնտեղ Աբրահա-մու վրանը, առեր է քանի մի հատ ցորեն եւ այս հատիկներն իր որդւոյն յանձնելէն վերջը, ինք դարձեալ ելեր է գագաթը, մտեր է վրանն եւ ալ չէ ետ դարձեր։

Մեր ամենահին պատմութիւնը նոյնպէս աւանդութիւններ հասուցած է մեզի Կաւկասեան լեռներու նկատմամբ․ այս աւանդութիւնները կը վերաբերին այն շրջանին, երբ Դ․ դարուն, ազ-գային հեթանոսական կրօնը յուսահատ պայ-քար կը մղէր օտարամուտ քրիստոնէութեան դէմ։ Ագաթանգեղոս կը պատմէ թէ երբ “Ե-րազամոյն„ կոչուած մեհենատեղիէն փնտուած մարդակերպ դեւերն՝ ապաստան էին գտած Ա-նահտայ մեհենին մէջ, եւ Ս․ Գրիգոր Լուսաւ-

որիչ եկեր էր զանոնք անկէ ալ արտաքսելու, խեղճ դեւերը շուարած մնացած՝ չէին գիտեր ուր երթալնին. եւ կը մտածէին՝ թէ “ի յո՞ դիմեալ փախիցուք„. ահա գեղեցիկ խորհուրդ մը կը յղանայ իրենց դիւական գլխուն մէջ եւ կ'որոշեն գալ մտնել “ի բնակիչս լերինն Կաւկասու„: Այս կերպով Անահտայ մեհենէն “տէրունական խաչով„ հալածուած հայկական սատանաները կը տեղափոխուին Կաւկասի լեռնաբնակներու մէջ. բայց արդեօք անկից զերծնք արտաքսող եղա՞ծ է թէ չէ, այստեղ թէ՛ պատմութիւնն եւ թէ՛ աւանդութիւնը կը լռեն: Չլինի թէ այս պատճառով է, որ Կաւկասեան լերանց բնիկները՝ թէ՛ լեռնցի եւ թէ՛ վրացի, ի սկզբանէ ի վեր այնքան հակառակ են գտնուած Հայերուն, եւ մինչեւ հիմայ ալ, չնայելով ամէն տեսակ հանգամանքներու փոխուելուն, նոյն խուլ հակառակութիւնը դեռ կը շարունակուի...:

Կազբէկի ստորոտի եւ լանջքի վրայ այժմ Վրաց բազմաթիւ լեռնական ցեղերէն մէկը կը բնակի, ողորմելի խրճիթներու մէջ. ասոնց մէջ դեռ եւս անաղարտ կը պահպանուին բնակութեան այն պայմանները, զոր կը յիշէ Քսենոփոն. գետնափոր սենեակ առանց պատուհանի, նախապատմական ծխան, եւ բնակարանը հաւասարապէս բաժնուած տանտէրերու եւ իրենց դուարի ու արջառի մէջ: Այս լեռնականները կը զբաղին գլխաւորաբար որսորդութեան, եւ յաճախ կը պատահին վայրի ցուլերու, որոնք դեռ այս կողմերն առատութեամբ կը գտնուին: Այս

կենդանիներու մորթն եւ մանաւանդ եղջիւրները վաճառման արդիւնաւոր առարկայ են որսորդներու համար:

Կազբէկի բարձանց վրայ ելլելու առաջին փորձն արած է 1811ին, Պարրօտ (Parrot), որ նշանաւոր է իր Մասիսի վրայ կատարած յաջող ելքովը: Բայց նա չկրցաւ մինչեւ գագաթ հանիլ: Պարրօտ՝ 11.500 ոտք բարձրութեան վրայ, $3^1/_2$ ոտք մեծութեամբ խաչ մի է գտած. եւ որ աւելի զարմանալի է՝ անկից 300 ոտք վեր ալ վանք մի է գտնուած, որ յատկապէս փորուած կ'երեւայ քարայրի մը մէջ: Տեղացիներու աւանդութեան համեմատ, հին ժամանակներն այս վանքի մէջ եօթը ճգնաւոր կը բնակին եղեր, որոնց մէկը սուրբ: Վեց անապատականներն, չար նախանձէն դրդուած, յաջողեր են խորամանկութեամբ իրենց ընկերը մոլորեցնելով, զրկել սուրբ լինելէ: Բայց երկնային պատիժը հասեր է շուտով բոլորին վրայ, եւ եօթն ալ ստիպուեր են թողուլ վանքն եւ իջնել վար: — Պարրօտէն վերջ ուրիշներ ալ փորձեցին, բայց չյաջողեցան: Յաջողութիւնը պահուած էր 3 անգղիացիներու (Լոնդոնի Ալպեան կլուբի անդամ), որոնք 1868ին՝ ամէն դժուարութիւններու յաղթելով կրցան մինչեւ գագաթն ելլել:

Իսկապէս Կազբէկի[1] ամէնէն հետաքրքրական տեսարանը կը կազմեն իր սառնավայրերը (ледникъ), զորոնք առաջին անգամ հայ մը, Պր. Խատիսեան է ուսումնասիրած (1863): — Սառնավայրերէն մէկը՝ Դէվդօրակի կոչուած, վեր-

ջին 25 տարուան մէջ ընդհանուր հետաքրքրութեան եւ ուսումնասիրութեան առարկայ էր դարձած։ Դէվդօրակին կազբէկի լանջքի վրայ՝ հիւսիս-արեւելեան ուղղութեամբ՝ մինչեւ 4 քիլօմէտր երկայնութիւն ունի, եւ ծովու մակերեւութէն 8200 ոտք բարձրութեան վրայ, իր լայնութիւնը՝ 460 մէտրի կը հասնի։ Այս սառնավայրի տեսարանը վերին աստիճանի հմայիչ է, բայց միեւնոյն ժամանակ աս է, որ իր կրծքէն ահագին կտորներ բաժնելով կը գլորէ վար՝ ճանապարհի երթեւեկութիւնը արգելելու։

## Ե.

Մեր կառքը կը շարունակէ ապահով ընթացքով յառաջանալ։ Մենք դարձեալ ձորի մէջ ենք մտած, բայց այս՝ Դարեալի ձորին չի նմանիր։ Այստեղ թէ՛ երկու կողման ժայռերն իրարմէ բաւական հեռու են, որով եւ աւելի լոյս կը մտնէ ներս, թէ՛ տեղւոյն դիրքն եւ տեսարաններն այնչափ վայրենի չեն, եւ թէ՛ նոյն իսկ Տերեքն ալ խելօքցած՝ աւելի հանդարտ ընթացք ունի։ Այստեղ մինչեւ անգամ՝ բնակութիւն ալ կայ. ժայռերու ծայրը, ապառաժներու գլխին՝ գիւղական հիւղիկներ կը տեսնուին, կարծես գամուած լերկ քարերու վրայ, ահարկու ամայութեան մէջ։ Այս հիւղիկները լեռնական գիւղացիներու բնակարաններ են, առանց որեւէ բուսականութեան. եւ իբրեւ ապրուստի միակ միջոց՝ քանի մի փոքր հողաբաժիններ միայն ունին իրենց ետեւը։ Եւ այս պաղ, տխուր, ժայ-

ռապատ խրճիթներու մէջ վրացեղ լեռնցին սովորած է անցընել իր կեանքը։ Տասնեակ տարիներ յառաջ անոր արուեստն աւազակութիւն էր. իսկ այժմ ստիպուած է ծանր աշխատութեամբ իր կտոր հացը ճարել. աւազակութեանը ժամանակ միշտ կարօտ եւ ողորմելի էր, այժմ ալ աղքատ եւ թշուառ է, եւ դարձեալ՝ ինչպէս միշտ, անհոգ է եւ անտրտունջ կը տանի իր խեղճ վիճակը։

Անցանք ձորը. ճանապարհն սկսաւ դարձեալ վեր հանել զմեզ։ Ցուրտն անտանելի կը նեղէ, թէեւ ամէն կերպով պատսպարուելու հոգ կը տանինք. մենք եւ մեր Եամշչիկները գրեթէ անբաժին ամբողջութիւն մը կը կազմէինք։ Յանկարծ կառքը կանգնեցաւ. հասեր էինք Կոբի կայարանը, ծովու երեսէն 6500 ոտք բարձր։

Կոբիի կայարանն իր ետեւի կարմիր պորփիւրէ ժայռին կռթնած՝ խրոխտաբար կը դիտէ առջեւի խորխորատն, ուր չորս ձոր զիրար կը կտրեն կամ իրարու կը միանան։ Օդի մէջ կատարեալ խաղաղութիւն կը տիրէր. երկինքը ջինջ էր. աստղներն իրենց մանրիկ լոյսերով մեր ոչ-ընդարձակ հորիզոնը կը լուսաւորէին. տեղ տեղ միայն՝ թուխ ամպեր դեռ կը դիտուէին։ Ձիւնը ճանապարհին վրայ առատութեամբ սփռած պընդած՝ իր սպիտակութեամբը գիշերուան խաւարին՝ աղօտ հակապատկեր մը կը ներկայացընէր։ Կայարանին կից հեռագրատուն կար եւ օդերեւութաբանական դիտարան։ — Ուղեկիցներէս մին առաջարկեց փոքր ինչ տաքնալ։ Այն միջոցին՝

պատնալ կը նշանակէր ստամոքսի մէջ տաք կամ տաքցընող ըմպելիք ածել. ամէնքս ալ համաձայնեցանք: Տաք սենեակի մէջ, փոքրիկ սեղանին շուրջը՝ դարձեալ տաք թէյ, զանազան թեթեւ ուտելիքներով՝ ձօրկայէ առաջնորդուած. այս եղաւ մեր տաքնալու գործողութիւնը: Կայարանին ճաշարանը յարմարութիւններէ զուրկ չէր, եւ եթէ ուղեւորները շատ խստապահանջ լինել չուզեն, թէ՛ ուտելիք եւ թէ՛ խմելիք՝ ինչ որ ցանկան կրնան գտնել այստեղ: Ինձ յանձնեցին փորձել՝ տեղական, կովի պատրաստուած պանիրին, որ ամբողջ Կովկասի մէջ ծանօթ է Օսէ պանէր անունով, որովհետեւ Օսերն (Օսետին) են պատրաստողները: Երբ մեր տաքութիւնը դրսէն եւ ներսէն արդէն կատարեալ էր, աւելորդ չհամարեցանք փոքր ինչ երկննալ նստարաններու վրայ. քնելու կամ երկար ժամանակ պառկելու եւ հանգստանալու մասին մտածել իսկ պէտք չէր, որովհետեւ դատապարտուած էինք շուտով ելլել եւ ամբողջ գիշեր անդադար յառաջ գնալ, ուպէս զի հետեւեալ երեկոյ կարենայինք Տփղիս հասնիլ: Այս միջոցին, դուրսը նոյն կարգը կը կատարուէր՝ ինչ որ մեր մինչեւ հիմայ անցած բոլոր կայարաններուն մէջ: Փոխեցին ձիերը, լծեցին նորերը. հին կառապանը եկաւ խնդրելու իր на чайը՝ ըմպողչէտը, նորը նստաւ իր տեղն, եւ կառքը պատրաստ էր զմեզ ընդունելու: Պինդ փաթթուած մեր վերարկուներու եւ գլխանոցներու՝ գրաւեցինք դարձեալ մեր տեղերը հանրակառքին մէջ. շաչեց նոր կա-

ռապանին եռանդուն մտրակը, բարձրացաւ սմբակներու միօրինակ դափրտոցն. եւ այսպէս Կոբիի կայարանն ալ թողինք մեր ետին։

Սկսած ենք ելլել, ելլել միշտ դէպ ի վեր, մանաւանդ երբ Կոբիի փոքրիկ գիւղն անցնելէ վերջը՝ մտանք Բօյթարեան ձորն, ուր քանի մի անգամ քարեղէն կամուրջներու վրայէն աջ ու ձախ կտրեցինք համանուն գետակն, եւ խիստ ղառիվերներով եւ պտոյտներով դարձեալ եւ աւելի վեր սկսանք բարձրանալ։

Հասած ենք մեր ճանապարհին ամենաբարձր կէտը. ծովու երեսէն 7694 ոտք բարձր ենք. (ոմանք կը չափեն մինչեւ 8142 ոտք։) Այս բարձրութիւնը գոյութիւն չունի Եւրոպայի մէջ. ուր ամենէն բարձր լեռնային ճանապարհը Սեմպլոնի (Simplon) գագաթան սիրուն անցքն է 69 քիլոմէտր երկայնութեամբ եւ միայն 6147 ոտք (3518 մէտր) բարձրութեամբ։ Չխոնարհած դէպ ի միւս երեսն, դէպ ի Անդրկաւկաս, կանգ առնենք այս բարձրութեան վրայ, եւ մտաւոր ակնարկ մի արձակենք մեր շուրջը, մանաւանդ երկու կողման, երկու թեւերուն վրայ։

Այս Կաւկասեան գլխաւոր լեռնաշղթան, առանց ընդհատման մօտ 1450 քիլոմէտր երկայնութեամբ կը տարածուի Սեւ ծովու եզերքէն (Անապա քաղաքին քովէն, 44° 54′ 24″ լայն. եւ 54° 58′ 32″ երկ.) մինչեւ Կասպից ծովը (40° 33′ 27″ լայն. եւ 67° 9′ 29″ երկ.) երկու մասի բաժնելով այն երկիրն, որուն իր անունն է տուած։ Եւրոպան Ասիայէն բաժնող

լեռնաշղթան՝ Կաւկասն ալ թէ աշխարհագրօրէն եւ թէ քաղաքականապէս կը բաժնէ Հիւսիսային Կաւկասի (Сѣверный Кавказъ) եւ Անդրկաւկասի. (Закавказье, անդր՝ Նկատելով Հիւսիսէն, Պետերբուրգէն։) Իր ամենաբարձր սարերն եւ անցքերն՝ Ելբրուսի եւ Կազբէկի մէջ եղած տարածութեան վրայ են, ուր բնակող լեռնական գիւղացիք՝ իրար հետ հաղորդակցելու համար ստիպուած են այնպիսի անցքերու դիմել, որոնք մշտական ձիւնապատ գագաթներու եւ նոյն իսկ սառնավայրերու վրայ գտնուելով՝ դժուարամատչելի, մանաւանդ թէ մեծապէս վտանգաւոր ալ են։ Այս անցքերէն ոմանց դիրքը մինչեւ 12.000 ոտքն ալ կ'անցնի։ Գլխաւոր լեռնաշղթային կենդրոնական միջօրէականին ամենացած գագաթը 8000 ոտքէ բարձր է. եւ այս՝ համեմատաբար մատչելի անցքն է, ուր ուղղուած է եղեր, ի սկզբանէ, Կաւկասի երկու բաժիններն իրար հետ հաղորդակցելու ծառայող կապն, եւ ուսկից կ'անցնի նաեւ այժմեան ռազմավիրական կոչուած ճանապարհը։ Միւս լեռնանցքներուն վրայ, որոնք 10—12000 ոտքի կը հանին, ոչ մի ուղի շինուած է։ Բայց պատմութիւնը մեզի ցոյց կու տայ, որ երբ հարկն ստիպէ, նոյն իսկ ահագին դժուարութիւններ ներկայացընող լեռնանցներն ու գագաթներն ալ մատչելի եւ անցանելի կը հանդիսանան։ Այսպէս անցան Անիբաղ, Նապոլէոն, Սուվորով եւ այլ զօրապետներ Ալպեան լեռները։ Սակայն առանց որեւէ ճիշդ համեմատութիւն դնելու՝ աւելորդ չեմ

համարիր այս առթիւ յիշել, որ կաւկասցի Հայ զօրապետ մը նոյնպէս կատարած է սոյնօրինակ գործ մը, որ Ռուսաց զինուորական տարեգրութեան մէջ՝ «պատմական եւ անօրինակ» բառերով է կնքուած։ 1853ին, «կաւկասեան» պատերազմի միջոցին՝ զօրապետ Արղութեան-Երկայնաբազուկ իշխանը լուր առնելով թէ Շէյխ Շամիլ յարձակում արեր է Ջաքաթալա գաւառին վրայ, Սեպտեմբերի մէջ իր ամբողջ բանակով, որ բաղկացած էր հետեւակ եւ ձիաւոր զօրքէ, եւ թնդանօթներով, ելաւ ձիւնապատ անանցանելի գագաթներու վրայ, եւ 10.000 ոտքէ աւելի բարձրութիւն ունեցող սարերու վրայէն մեծ ճարպկութեամբ եւ յաջողութեամբ անցնելով ստիպեց թշնամին թողուլ գրաւած տեղերն եւ փախուստ տալ իր առջեւէն։

Գլխաւոր լեռնաշղթան հարուստ է նաեւ սառնավայրերով, որոնց մեծ մասը Կազբէկի եւ Էլբրուսի մէջ եղած սարերու լանջքերուն վրայ ամփոփուած են։ Ամէնէն նուազ բարձրութեան վրայ կանգնած է՝ Կարաուգոմ կամ Կալչէդոն կոչուածն, որ ծովու մակերեւութէն 5700 ոտք միայն բարձր է եւ 1500 ոտք լայնութիւն ունի։ Անգղիացի ճանապարհորդ մը՝ Ֆրէշֆիլդ, կը վկայէ որ ասկէ մեծ է՝ միայն Հելուետիայի Ալեչեան սառնավայրը։ Նորագոյն ուսումնասիրութիւնները կը հաստատեն, որ այս սառնավայրերն ընդհանրապէս սկսած են հալիլ նուազիլ. եւ թէպէտ ոչ այնչափ արագ եւ զգալի կերպով, բայց հեռու չէ անշուշտ այն ժամանակն, որ

Կաւկասեան լեռներուն՝ բնութեան այս նշանաւոր արտադրութիւններն այլ եւս այն հետաքրքրութիւնը պիտի չազդեն նոյն ընդարձակութեամբ եւ պէսպիսութեամբ՝ ինչպէս այժմ[1]:

Կոբիէն մինչեւ հետեւեալ Գուդաուր կոչուած կայարանը՝ գետնի վրայ ձիւնն ամառ ձմեռ գրեթէ չի դադրիր փայլելէ: Այստեղ Բայդարեան ձորին երկու կողմէն ահագին լեռներ՝ իրարմէ ոչ շատ հեռու՝ ուղղաձիգ կը բարձրանան, իրենց վրայ կրելով ձեան մեծաքանակ պաշար: Ձիւնը վիթխարի պարիսպներով երկու կողմէն կը նեղէ կը սեղմէ թէ՛ ձորն եւ թէ՛ մէջէն անցնող համեմատաբար նեղ ճանապարհը: Այստեղ է ահա, որ հսկայաձեւ համակ ձիւնապատ բարձունքն՝ դեկտեմբերէն մինչեւ Ապրիլ շարունակ, վար կը գլորեն ահագին մեծութեամբ ձիւնակոյտներ, որոնք տարածուելով եւ բարձրանալով ճանապարհին վրայ, ամբողջ օրեր եւ երբեմն նաեւ շաբաթով իրենց լիազօր իշխանութեան տակ կը պահեն եւ կը խափանեն

---

[1] Մեր Մասիսն (Արարատն) ալ ունի սառնավայր հիւսիսային կողին վրայ, որ կ'իջնայ դէպ ի Ս. Յակոբայ կոչուած հովիտը: 1840ի մեծ երկրաշարժին այս սառնավայրին մի մասը քանդեցաւ եւ հովտին ապառաժներէն փրթած քարերուն խառնուելով՝ ահագին թումբ մը ձեւացուց նոյն սառնավայրէն բղխած (Ս. Յակոբի աղբիւրին կամ) առուակին առջեւ: Առուակը չկրցաւ իր առջին խռնուած այս մեծ արգելքը քանդել, եւ եռ եռ հաւաքուելով լայնածաւալ լիճ մը դարձաւ, եւ յանկարծ Յունիս 22ին սոսկալի ուժով քշեց տարաւ առջեւի թումբն եւ ուրիշ ամէն արգելք: Այս միջոցին էր որ ողողեցաւ եւ աւերեցաւ պատմական մեծ աւանն Ակոռի իր ընդարձակ այգիներովն: Աւանին բնակիչներէն անոնք միայն ազատեցան՝ որոնք ողողման ժամանակ բացակայ էին գեղէն: Ակոռեցւոց այս մնացորդին շինածն է այժմեան Նոր-Ակոռի կոչուած գեղը՝ հինէն բաւական հեռու, բայց աւելի ապահով տեղ:

բովանդակ անցքը։ Ցաճախ են այս ձիւնակոյտներու անկումն եւ անկէ յառաջ եկած խափանումներն, այնպէս որ այս գագաթանց վրայ միշտ բանուորներու մեծ խումբ մը կը պահուի պատրաստ, որպէս զի խափանուած ճանապարհն անյապաղ կարելի լինի մաքրել։ Ճանապարհի վրայ, զանազան տեղեր յատուկ մարդիկ կան դրուած, որ մօտէն քննեն այն մասերն, ուսկից յաճախ կը պատահի կամ մօտալուտ կը նկատուի ձիւնակոյտի անկումն. եւ ձեան շարժումը դիտեն, ուստի անմիջապէս կամ սուլոցով եւ կամ դրօշ պարզելով կ՚իմացընեն վտանգն, եւ այս կերպով կը դադարեցընեն ամէն երթեւեկութիւն նոյն ճանապարհի վրայ։ Այս զգուշութեան շնորհիւ է, որ մարդկային զոհ կամ այլ դժբախտութիւն շատ քիչ կը պատահի՝ չնայելով ձիւնակոյտներուն այնչափ յաճախ ընկնելուն։ Ով որ՝ գէթ կարճ միջոց, ձմեռ ժամանակ կամ գարնան սկիզբը բնակած է Տփղիս, եւ բոլորովին անջատ չէ ապրած արտաքին կամ լրագրական աշխարհէն, շատ լաւ կը հասկնայ եւ կը յիշէ անշուշտ զավալ (завалъ ճանապարհի խափանում) բառն, որովհետեւ շաբաթ չ՚անցնիր, որ չլսէ կամ լրագիրներու մէջ չկարդայ այս բառը։ Եւ որո՞ւ մտքէն կրնայ անցնիլ, որ այս անընդհատ խափանումներու, այս զավալներու մեղքը գլխաւորաբար կ՚ընկնի զանազան հաղաբաղէտա—հէններու վրայ, որոնք ընկերանալով Ոսկ—ներու, չինաորի եւ կոջորի՝ կը պատճառեն այս ամէն արկածները։ Որպէս զի ընթերցողը գործն ըմբռնէ, կը փութամ

բացատրել, որ այն բարձունքն՝ ուսկից սովորաբար ձիւնակոյտերը վար կ'իջնեն եւ ճանապարհը կը խափանեն, մկրտուած են յատուկ կոչումներով, որոնցմէ են վերեւ յիշածներս, Հազարապետու-հիներ՝ Մեծ եւ Փոքր, (большая и малая маiорши) Թթու (кислый) Զինուորէ եւ Կոզակէ բարձունք (солдатскiй, казачiй) եւայլն, որոնք ունին իրենց պատմութիւնը։ Օրինակի համար, Հազարապետուհիներ անուամբ կնքուած բարձունքին համար կը պատմուի՝ թէ հազարապետի մը կինը կառքով այս լեռան տակէն անցած ժամանակ, իր աղախնին վրայ բարկանալով հրամայեր է, որ կառքէն դուրս ելլէ եւ առջեւէն ոտօք երթայ։ Աղախինը կը հնազանդի եւ կ'անցնի կառքէն յառաջ, կամ կառքէն ետ կը մնայ՝ լաւ չեմ յիշեր։ Ճիշդ այս միջոցին՝ բարձունքէն ահագին ձիւնակոյտ մը կու գայ կը թաղէ իր տակը հազարապետուհին իր կառքին մէջ. իսկ աղախինը, որ կառքէն դուրս էր՝ կ'ազատի։ Այս արկածին վրայ, այն բարձունքն, որ երկու գագաթ ունի մեծ եւ փոքր, կը սկսի յիշուիլ իր զոհին անունովը, որ մինչեւ հիմայ նոյնպէս կը շարունակուի։ Զինուորէ եւ Կոզակէ գագաթներուն առջեւն ալ զինուորներ եւ կոզակներ ձիւնակոյտի զոհ են գնացած։ Իսկ Թթու ասուած բարձունքին տակէն թթուահամ հանքային ջուր կը բղխի, որու համը կարողացեր է ազդել իր պահապան սարին անուան վրայ։

Ճանապարհին այս մասին վրայ, Շավալ տուող բարձունքը 11 հատ են, իրարու բաւա-

կան մօտ կանգնած, կարծես այն նպատակով, որ եթէ իրենցմէ մէկը չյաջողի, միւսն օգնութեան հասնի եւ անպատճառ խափանեն անցքը։ Այս ղուվալներն անցնելէն վերջն է, որ մեր առջեւ կ'ելլէ ռազմավիրական ճանապարհին ամենաբարձր կէտն՝ ուր քարէ փոքր սիւն մը կայ՝ վրան Крестовый перевалъ 7694 фута = “Խաչի լեռնանցք 7694 ոտք„ արձանագրուած։ Այսպէս կոչուելուն պատճառն է՝ ճանապարհէն կէս քիլոմէտր անդին, դէպ ի ձախ՝ քարէ մեծ խաչ մը գտնուիլը, որ տնկուած է այնտեղ 1824ին Կովկասի նախկին Երմոլով փոխարքայէն։ Այս խաչին համար պնդողներ կան թէ՝ նորոգուած է 1824ին՝ եւ ոչ թէ կանգնուած, որովհետեւ Վրաց աւանդութիւնը կը պատմէ թէ այնտեղ այսպիսի խաչ մը կայ եղեր դրուած՝ իրենց Թամարա թագուհիէն կամ Դաւիթ Նորոգիչ արքայէն։ — Ուրիշ աւանդութիւն մ'ալ կ'ուզէ հաւատացընել թէ այն միեւնոյն տեղը հին յունական՝ կամ գոնէ յունական անունով փոքրիկ աւան կայ եղեր — Փոսֆորոս (Լուսակիր), ուր Ա. Դարուն 40ական թուականին Ս. Անդրէաս Նախակոչ Օսեթիններուն քրիստոնէութիւն է քարոզեր[1]։

---

1 Քանի որ աւանդութիւններ յիշեցի, պատմեմ այստեղ նաեւ հետեւեալ առասպելը Կովկասեան գլխաւոր լեռնաշղթային վրայ, որ կը գտնեմ ռուս հեղինակի մը քով, Надеждинъ, Прирога и Люди на кавказѣ. “Նադեժդին, Բնութիւնն եւ մարդիկ ի Կովկաս„ եջ 57—58)։ — Կար ժամանակ՝ երբ Կովկաս պտղաբեր լեռներու շարք մ՚ըն էր, կանաչապատ եւ կատարելապէս մատչելի ամենուն։ Այն միջոցին լեռան ամենաբարձր գագաթան վրայ քարայրի մէջ ճգնաւոր մը կը բնակէր, որ ո՛չ դադար ունէր ոչ հանգիստ

Դարուս սկիզբները (1811ին), ռուս զօրապետ մը՝ տեսնելով որ այս բարձր լեռնանցքը շատ քիչ վստահութիւն կը ներշնչէ իբրեւ ապահով ճանապարհ անցուդարձի, եւ ձիւնէն խեղդուելու վտանգներն ալ բաւական շատ են, առաջարկեց կովկասեան գլխաւոր կառավարութեան, որ այս լեռնանցքի վրայ ալ՝ բացառապէս ապաստանարան կամ յատուկ վանք մը հիմնուի, վտանգեալներն ազատելու նպատակաւ, Ալպեան Ս. Բեռնարդի նման. բայց այն ժամանակուան կովկասեան հրամանատարը չընդունեցաւ այս գեղեցիկ ծրագիրը՝ պատճառ բերելով տեղացի վանականներու տգիտութիւնը։

Իսկ մեր կառքը՝ խորին մթութեան մէջ, Երմոլովեան խաչքարի որոշած 7694 ոտք բարձրութիւնն անվտանգ թեւակոխելէն վերջը, սկսեր էր արդէն խոնարհիլ դէպ ի վար, գլխաւոր լեռնաշղթային միւս երեսը, Անդրկովկասի կողմը, ձախ կողմէն ունենալով Գուդ լե-

---

չար սատանայէն։ Երկիւղած ճգնաւորն օր մը խնդրեց Աստուծմէ, որ գէթ մի անգամ Աստուած իշխանութիւն տայ իրեն՝ վրէժ հանելու սատանայէն։ Աստուած լսեց անոր խնդիրը, առանց հարցնելու իսկ՝ թէ ինչ միջոցի պիտի դիմէ անապատականն իր նպատակին հանելու համար։ Ճգնաւորը մեծ ունելիք մը գտաւ, լաւ մը կարմրցուց կրակի մէջ, եւ երբ սատանան, իր սովորութեան համեմատ դարձեալ եկաւ եւ գլուխը քարայրէն ներս կոխեց, սուրբ մարդն իսկոյն, Աստուծոյ անունը տալով, մօտեցաւ սատանային եւ հրաշէկ ունելիքով յանկարծ բռնեց այնպէս ամուր ճնշեց սատանային քիթը, որ սատանան սարսափելի ցաւէն սկսաւ պոչը սաստիկ շարժել։ Պոչն որ չափազանց մեծ էր, թէ Սեւ ծովուն եզերքը կը հասնէր՝ թէ Կասպից ծովուն. եւ ասոնց մէջտեղի կովկասեան լեռներն ուժգնակի կը հարուածէր։ Եւ սատանային այս պոչի հարուածներէն է, որ գոյացեր են Կովկասի լեռներուն մէջ այսպիսի հովիտներ, ձորեր, փոսեր, այնպէս խառնիխուռն եւ անհարթ։

ւան կողն իր անմատչելի ձիւնաթաթախ սաղաւարտովն, եւ աջէն ունենալով "Եօթն եղբարց" ասուած սարն, իր 7 իրարմէ տարբեր գագաթներովը։ Լեռ, բարձունք, հովիտ, բոլորն ալ ձիւնախաղաղ եւ կարծես միմիանց վրայ դիզուած, ահա թէ ինչ կը ներկայացնէր մեզ այստեղ՝ բնութիւնը։ — Իջնելով այսպէս դէպ ի վար մտանք եւ կտրեցինք Սատանայէն (чертовая долина) կոչուած հովիտը, զոր ռուս բանաստեղծը՝ (Լերմոնտով) անուան նոյնութենէն օգտուելով կը նախընտրէ Սատանայական կոչել[1]։ Սահմանային կոչուելու պատճառն այն է, որ այս հովիտը՝ Վրաստանի սահման կ'ըմբռնուի։ — Միեւնոյն ժամանակ միւս՝ այն է մեր անցած հիւսիսային երեսին վրայ՝ կը թողուինք նաեւ անզուսպ Տերեքն, որու փոխարէն, մեր ստորոտը կը թանար՝ ոչ-նուազ գահավէժ անդնդի մը մէջ Արագվա գետը՝ հանդարտ եւ արծաթափայլ՝ ճիշդ հակապատկեր առաջնոյն։

Զ.

Գուդաուր՝ փոքր կայարան է աննշան Բուֆէտով (buffet), որուն կարճ այցելութիւն մը տուինք եւ ապա հրաւիրուեցանք դարձեալ մտնել մեր նշանաւոր կառքի ծածկին տակ, ամուր փաթթուելով Եափինջաներու մէջ։ Ցուրտն իր բովանդակ իշխանութիւնն ի գործ կը դնէր,

[1] Ռուսերէն чертовая բառը կը նշանակէ սահմանային, իբրեւ արմատ ընդունելով черта (գիծ, սահման) բառը. միեւնոյն բառը կը նշանակէ նաեւ սատանայական, чертъ (սատանայ) արմատէն առնելով։

որովհետեւ դեռ 7245 ոտք բարձր էինք ծովու մակերեւութէն։ Անկէ վերջը պիտի սկսէինք կամաց կամաց վար իջնել մեր "կաւկասեան" բարձրութենէն։ Կառքի մէջ ուղեկիցներէս ոչ մէկն՝ ոչ փափագ, ոչ ալ գրեթէ ոյժ ունէր խօսելու. խիստ ցուրտը, տեղի անյարմարութիւններն եւ մանաւանդ անքնութիւնը թմրեցուցեր էին զմեզ կատարեալ։ Այս վիճակի մէջ եւս 7 վերստի չափ անցեր էինք արդէն, երբ կառքը սովորականէն աւելի սկսաւ ցնցել եւ արագօրէն դէպ ի վար սահիլ։ Կ'անցնէինք ռազմավիրական ճանապարհին ամենահետաքրքրական մասերէն մէկը։ Ամբողջ 7 քիլոմէտր տեղ՝ ճանապարհը փորուած ու յարմարցուած էր հսկայական եւ կատարելապէս ուղղաձիգ ժայռի մը երեսին, եւ ահագին բարձրութենէն օձապտոյտ դարձուածներով վար կ'իջնէր մինչեւ Արագվայի եզերքը։ Դիւրին է երեւակայել թէ ինչ մեծ աշխատանք է արժած այս ճանապարհը՝ մանաւանդ մեզմէ 40 տարի յառաջ։ Փորեր են վիթխարի ապառաժներն ու մտեր մէջը։ Բանուորները կէս մէջքէն կապուած կախեր են սոսկալի բարձրութենէն վար, եւ այնպէս բանեցուցեր, որով քիչ քիչ կարողացեր են նախ յենարաններ եւ ապա վերջապէս ամբողջ ճանապարհ պատրաստել ապառաժներու մէջ։ Որպէս զի անդնդին կողմէն ալ որեւէ վտանգ չպատահի, ճանապարհի եզերքին ամբողջ երկարութեան վրայ յատկապէս շինուած քարէ մեծ պատ մը կը բարձրանայ, որ շատ տեղ նոյն իսկ վիհը կը ծածկէ մեր աչքէն։

Այս ճանապարհը կը կոչուի "Բօրժօմսկօյէ շօսէ-վօյէ", որովհետեւ շինուած է այն թուականին, երբ Բարեատինսկի Կաւկասի փոխարքայ էր. (1857—1861։)

Ջառիվայրն իջնելէ ետքը չեմ գիտեր քանի վերստ էինք գնացեր, երբ քովս նստող վրացին ձայն տուաւ ինձի։ Վրաս թմրութիւն եկեր, կէս քուն էի մտեր։ Աչքերս բացի, կառքը դադարեր էր շարժելէ. ելանք դուրս։ Ի՛նչ ուրախութիւն. լուսացեր էր։ Գիշերն իր տխուր եւ թանձրամած քողը վերուցեր էր մեր վրայէն. եւ պիտի կարենայինք լոյս աչքով դիտել մեր շրջապատը. գիշերուան ծանր եւ ձանձրացուցիչ միօրինակութիւնը կը վերջանար եւ ցերեկուան կենդանի եւ բազմատեսակ պատկերներն ու տեսարանները ցոյց տուող ուրախ ժամերը կը սկսէին։

Հասեր էինք արդէն Մլէթ կայարանը. վերջապէս թողեր էինք Կաւկասեան գլխաւոր լեռնաշղթային միւս՝ այսինքն հիւսիսային երեսն, իր մշտատեւ ձիւնովն, իր ցուրտ ու վայրենի բնութեամբն, իր ամայի եւ մառախլապատ վայրերովը։ Մլէթէն վերջը հետզհետէ մեր առջեւ պիտի պարզուէր հարաւային կամ Անդր-Կաւկասն իր գեղազուարճ եւ համեմատաբար տաք բնութեամբն, պտղաբեր այգիներովն եւ մշակուած կանաչազարդ դաշտերովը։ Մլէթ՝ ճիշդ կէս ճանապարհն է Տփղիսի եւ Վլադիկաւկասի մէջ, եւ կայարանը կառուղիէն փոքր ինչ վեր է կառուցուած, ուստի հոն ելլելու համար նեղ ու երկայն քարէ սանդուղքի մը դիմեցինք։ Ի՜նչ մեծ

զանազանութիւն ասոր եւ մեր մինչեւ հիմայ տեսած կայարաններուն մէջ։ Այստեղ անհամեմատ աւելի մաքրութիւն կը տիրէր։ Ամէն տեսակ դիւրութիւն կար ճանապարհորդներու համար. գիշերելու համար ընտիր սենեակներ մաքուր անկողիններով, ելեկտրական զանգակով, ճոխ սեղանատուն, ընդարձակ ճաշարան։

Չնայելով առաւօտեան խիստ ցրտին՝ կայարանին վերի յարկն ելայ եւ պատշգամէն սկսայ դիտել մեր շրջապատը։ Դիմացի գետեզերքին վրայ բարձրացած սարերը ձիւնապատ եւ կոնաձեւ գագաթներովն սքանչելի տեսարան կը պարզէին աչքիս։ Այստեղ դադրած էր արդէն լեռնաշղթայի միւս երեսին սանձարձակ կատաղութիւնն, այստեղ բնութիւնն՝ աւելի վեհ եւ աւելի հանդարտ՝ կը պատրաստուէր կարծես հեռացնել իրմէ վայրենի երեւոյթներն եւ տեղի տալ որ մարդկային ճարտարութիւնն իր ծոցին մէջ եւ իր լանջքին վրայ պեղումներ եւ կերպարանափոխութիւններ կատարէ։

Կայարանին առջեւ բաց ի մերինէն՝ 2—3 ուրիշ կառքեր ալ կային, որոնց երջանիկ ճանապարհորդները՝ նախընթաց առաւօտ Տփղիսէ կամ Վլադիկաւկասէն մեկնած, այստեղ հանգիստ գիշերեր էին եւ հիմայ որ ցերեկով պիտի շարունակէին իրենց ճանապարհը, Տփղիսէն եկողը դէպ ի վեր, իսկ Վլադիկաւկասէն եկողը մեզի հետ դէպ ի վար, դէպ ի Տփղիս։ — Այսպիսով Մլէտ՝ ռազմավիրական ճանապարհին ամէնէն կարեւոր միջնավայրը կը հանդիսանայ,

իբր կապ ու կենդրոն երկու ծայրերուն. եւ այս պատճառով ալ՝ ամէնէն աւելի յաճախեալ՝ շատ աւելի մաքուր կը պահուի քան բոլոր միւս կայարանները։

Խաչքարի բարձունքէն մինչեւ Մլէտ՝ 33 վերստ էր եւ իբր 3 հազար ոտք աւելի ցած. այնպէս որ հիմայ մենք միայն 4900 ոտք բարձր էինք ծովէն։

Հետզհետէ մթնշաղ երկինքը տեղի տուաւ պարզ ու պայծառ կապուտին. ամէն խաւարային նշոյլ հեռացած էր մեր հորիզոնէն, կը զգացուէր որ դիմացի լեռնագագաթին ետեւն էր արեգակը։ Նոյն իսկ ձիւնը հրաժեշտ տուեր էր մեզի։ Բնութեան երեւոյթներուն այս մեծ փոփոխութեան բովանդակ կարեւորութիւնն ու յարգը նա՛ միայն կրնայ գիտնալ՝ որ մեզի պէս ամբողջ գիշեր անքուն ճանապարհ արած է ձիւնապատ բարձունքի վրայ եւ խաւարչտին ձորերու եւ կիրճերու մէջ. թէեւ օդը ցուրտ էր դարձեալ. բայց գոնէ լոյս էր եւ պարզ։

Քանի մի բաժակ թէյով տաքցած՝ մտանք դարձեալ շարժուն ծածկի տակ, եւ կառքն սկսաւ իջնելու գործողութիւնը շարունակել, բայց զառիվայրն անհամեմատ աւելի հարթ էր։ Այժմ կը քերենք Արագվա գետակին աջ եզերքը, եւ որչափ կը յառաջանանք՝ այնչափ ալ բնութիւնն իր վայրենութիւնը թողած կը փափկանայ։ Մտած ենք ընդարձակ հովտի մը մէջ, որու երկու կողմը թէեւ նոյնպէս սարեր կը բարձրանան, բայց ասոնք փոխանակ թանձր ձեան վարագուրի՝ խիտ

անտառով են ծածկած։ Միւս կողմէն, նոյն սարերու լանջքին վրայ փոքրիկ գիւղակներ կը տեսնուին. եւ փոքր ինչ աւելի յառաջանալով, մեր առջեւ արդէն կը բացուին ոռոգուած մարգագետիններ, մշակուած արտեր եւ խնամուած այգիներ, թէպէտ ոչ շատ օրինակելի կերպով։ — Մեղմ եւ հաճելի էր օդն ալ։ Այս բոլորին հետ՝ հնութեան կիսաքանդ յիշատակարաններ ալ կը գրաւեն մեր ուշադրութիւնը։ Երկու հին աշտարակ, որոնք ըստ երեւութին ոսոխի դէմ հովտին մուտքը պահպանելու համար են կառուցուած, եւ բազմաթիւ փոքրիկ եկեղեցիներ, որոնց մէջ հոգեւոր երգն անշուշտ երկար դարերէ ի վեր լռած է, այժմ կիսաւեր եւ կործանման մատնուած՝ միայն ճանապարհի տեսարաններու պէսպիսութեանը կը ծառայեն։

Հասանք այսպէս՝ Պասանաուր փոքր կայարանն ուր փոքրիկ դադարէ ետքը՝ շարունակեցինք ճանապարհը՝ դարձեալ բնութեան նոյն տեսարաններն ունենալով մեր հանդէպ։ Օդը՝ տեղւոյն ցածնալուն եւ օրւան յառաջանալուն չափով սկսեր էր աւելի ջերմութիւն ընդունիլ արեւուն ճառագայթներէն։ Ճանապարհն այլ եւս գրեթէ զառիվայր չունի, եւ մեր վեց ձիերն աշխոյժով կը ձգեն կառքը՝ չոր ու հարթ գետնի վրայ։ Մլէտէն մինչեւ Պասանաուր $18^1/_2$ վերստ է, իսկ Պասանաուրէն մինչեւ Անանուր՝ ամէնէն մեծ երկայնութիւնն է՝ 21 վերստ։ Կէսօրը մօտ էր արդէն՝ երբ այս վերջին կայարանը մտանք։ Այստեղ՝ առանց երկար մտածելու՝

գրաւեցինք ճաշարանի սեղաններէն մէկն եւ ձեռնարկեցինք մեր կարեւոր գործին: Կայարանին մէջ՝ մեզմէ զատ ուրիշ ուղեւորներ ալ կային. ի մէջ այլոց՝ իմ Բաթումի ծանօթներէս՝ ճարտարագէտ (ingénieur) Բ-սկի իր դեռատի տիկնոջ հետ: Այս պարոնն, ինչպէս ինք պատմեց, իր նորապսակ կնոջ հետ եկեր էր Տփղիս եւ քանի մի օր կենալէն վերջը՝ երբ կը պատրաստէր իր գործին Բաթում դառնալու, ահա Հոկտ. 28ին (1895) Տփղիս-Բաթումի երկաթուղին՝ սաստիկ անձրեւներով յորդացած գետերէ ողողուելով, իբր 50 քիլոմէտր ճանապարհ եւ երկու կամուրջ բոլորովին քանդուեր եւ այս կերպով ամէն հաղորդակցութիւն ընդհատեր էր: Այնչափ մեծ էր երկաթուղւոյն կրած աւերն, որ 2 ամսէն յառաջ հնար չկար նորոգելու, մանաւանդ կամուրջները: Ուստի Պր. Բ-սկի՝ ինչպէս շատ ուրիշ Բաթումի ուղեւորներ, համոզուելով որ երկաթուղւոյ վրայ պէտք չէր յոյս դնել, ստիպուած էին տասնպատիկ երկայն շրջան կատարել Բաթում հասնելու համար: Տփղիսէն՝ Վլադիկաւկաս կառքով, այն տեղէն Նովոռոսիսկ երկաթուղւով եւ Նովոռոսիսկէն ալ Բաթում նաւով. 6 ամբողջ օր՝ փոխանակ 12 ժամի:

Անանուրէն բաժնուելնուս՝ աւելի ուրախ տրամադրութեան մէջ էինք՝ քան մինչեւ հիմայ ամբողջ ուղեւորութեան ժամանակ. որովհետեւ կէս օր միայն մնացեր էր Տփղիս հասնելու, եւ մանաւանդ որ այնուհետեւ մեր ճանապարհը յոգնեցուցիչ չէր, այլ աւելի հանդարտ, եւ

աւելի հանգիստ, մանաւանդ ցերեկին։ — Սակայն անիրաւութիւն կը լինէր, որ կաւկասեան լերանց ստորոտէն բոլորովին հեռացած ժամանակ, երբ անշուշ բնութեան վրայ այնչափ խօսեցանք՝ գոնէ քանի մի ազգագրական տող ալ չնուիրէինք այն լերանց բնաւոր էակներուն։

## Է.

Ամենահին պատմական ծանօթութիւններն որ թողած են մեզ՝ հայ, յոյն, հռոմայեցի եւ վրացի պատմագիրները, շատ անորոշ կերպով կը նկարագրեն թէ ի՞նչ տեսակ ժողովուրդներ են բնակեր Կաւկասեան լերանց մէջ։ Այժմեան գիտնականներն ալ հասարակ շատ քիչ հաւատ կ՚ընծայեն հին պատմագիրներու կցկտուր նկարագրութիւններուն, որոնցմէ իրօք դժուար է որ եւ է ուղիղ եզրակացութիւն հանել։

Կաւկասի բնական, աշխարհագրական դիրքն ենթադրել կու տայ որ կաւկասեան լեռնաբնակներու մի մասը հիւսիսէն, այսինքն Եւրոպայի կողմէն է եկած. իսկ միւսը հարաւէն կամ Ասիայէն. որովհետեւ դժուար է, իրօք, երեւակայել, որ ամբողջ ժողովրդային բանակներ իրենց ընտանիքներով, իրեղէններով եւ անասուններով կարողանային այն հսկայ բարձրագագաթներն ելլել — եւ մանաւանդ միւս կողմն անցնիլ։ Հաւանականաբար դէպ ի լեռնաշղթան դիմող ժողովրդային բանակները հարկադրեալ են գտնուած՝ լերանց ստորոտներու վրայ կանգ առնել եւ իրենցմէ յառաջ այնտեղ

գտնուող բնակիչներու հետ ձուլուիլ եւ կամ իրենք են ձուլած, նայելով թէ ո՛վ աւելի ուժեղ է հանդիսացած այն մաքառման ժամանակ, որ անշուշտ տեղի պիտի ունենար իրար մէջ։ Այս կերպով՝ եկուոր ցեղերուն մէջէն այն ցեղը միայն կրնար փոքր ի շատէ հաստատուիլ եւ համեմատական յառաջադիմութիւն անել, որն իր դիրքին շնորհիւ կը կարողանար յարաբերութիւններ ունենալ ուրիշ ժողովուրդներու հետ։

Պատմական ժամանակներու սկիզբը՝ իբրեւ հիւսիսէն եկած կամ արեւմտեան լեռնաբնակներ կը ներկայանան Ալանները (Ասեր, Օսեր կամ Օսեթիններ), որ կաւկասեան լեռնաշղթայի վրայ հաստատուելէ վերջը, իրենց յարաբերութեանց աւելնալովը եւ ազդեցութեան ուժեղանալովը տարածուեր են դէպ ի Սեւ ծովի ափունքը։ Իսկ Ասիայի կողմէն եկած կամ արեւելեան ցեղերն էին՝ Խազարները, Աւարները, Հոները եւ Բուլղարները։ Այս երկու խումբ ժողովուրդներն են գրաւած կաւկասեան լեռնաշղթային գլխաւոր անցքերը՝ թէ կենդրոնական մասը — Տէրէք գետի կողմէն — եւ թէ կողմնականը — Կասպից ծովի եզերքին մօտ։ Թէ Ալանները կամ այժմեան Օսերը եւրոպական ծագում ունին, թէ հիւսիսէն են եկած, եւ բոլորովին կը տարբերին իրենց դրացի լեռնականներէն, — այս կը հաստատուի նորագոյն գանգաբանական եւ լեզուագիտական հետազօտութիւններով[1]։ Միւս ափ-

---

1 Պանտիւխով, Կաւկաս, կայսեր. Աշխ. ընկ. Ը. Հրատարակ։

ական խումբէն Խաղաչներու վրայ մեր պատմագիրներու մէջ ալ յիշատակութիւն կայ. բայց այս ցեղի ամենէն հետաքրքրական կողմերէն մէկն ալ այն է, որ իր կրօնը նախ մովսիսականութիւնն է եղած, զոր ընդունած կ՚երեւայ այս կողմերն եկող հրէական գաղթականութենէ։ Թաթարական ընդհանուր արշաւանքի ժամանակ Խազարներն ալ բռնի իսլամացած են. բայց շատ հաւանական է, որ այժմ իրենց մէջ բնակող հրէադաւան ժողովրդեան մի մասը ծագումով օտար չլինի իրեն։

Հետաքրքրական է սակայն, որ վերջին մարդաբանական եւ հնագիտական քննութիւնները կը ճգնին ցոյց տալ թէ այս տեղի բնիկ ժողովուրդներէն ոչ մէկը՝ Կաւկասի նախապատմական ժամանակի բնակիչներուն ուղղակի սերունդը չէ, որովհետեւ ամենահին գերեզմաններէն հանուած գանգերու համեմատութիւնը կ՚ապացուցանէ թէ նախապատմական բնակիչներն երկայնագանգ էին, ուր որ այժմեանները կարճագլուխներու (brachycéphale) տեսակէն են։ Եթէ ապագայ աւելի հիմնաւոր քննութիւններն եւս հաստատեն տեսակներու այս տարբերութիւնը, հարկ է եզրակացնել թէ պեղուած հին գերեզմանները գոյութիւն ունէին Կաւկասի մէջ՝ այժմեան ցեղերու երեւալէն յառաջ։

Կաւկասի բնակիչներն՝ իրենց Փիզիգական պատկերի համեմատ՝ երկու ընդհանուր ցեղի կը վերածուին. Միջերկրական (կամ կովկասեան՝ Բլումենբախի հին դասաւորութեան համաձայն) եւ

մոնգոլեան։ Առաջին ցեղի ներկայացուցիչները կը բնակին Կովկասեան լեռնաշղթայի երկու լանջքերու եւ Անդրկովկասի արեւմտեան կէսին վրայ։ Իսկ մոնգոլեան ցեղի ժողովուրդները գլխաւորաբար Անդրկովկասի արեւելեան մասի, Կասպից ծովի եզերքի եւ Կովկասեան գլխ. լեռնաշղթայի ստորոտի վրայ։ Ցեղերու այսպիսի տեղաւորումէն կ'երեւայ, որ մոնգոլականները Կովկասեան պարանոցի վրայ իբրեւ Թափառական ժողովուրդ են յայտնուած, եւ տեղւոյն երկրագործ բնիկ ցեղերը ձորերու մէջ եւ լեռնիրու վրայ մղելով իրենք գրաւած են արօտատեղիներն եւ բարձրագաւառները։

Կովկասի ազգագրական անուանակարգութիւնը (nomenclature) դեռ շատ խառն վիճակի մէջ է, որով եւ դեռ կը պահպանուի այն թիւր կարծիքը թէ Կովկասի մէջ անսովոր թուով եւ իրարմէ բոլոր տարբեր ժողովուրդներ կ'ապրին։ Բայց՝ իրն այդպէս չէ. Կովկասի մէջ անսովոր թուով "ժողովուրդներու անուններ" կան միայն եւ ոչ թէ "ժողովուրդներ". այս է, որ շատերը կը մոլորեցնէ։ Յայտնի է, որ առհասարակ ժողովուրդները շատ քիչ անգամ կը ճանչցուին այն անունով, որ իրենք իրենց կուտան։ Այս բանս ամենէն աւելի կ'երեւայ Կովկասի մէջ։ Այստեղ ամէն ժողովուրդ՝ իր սեպհական անունէն զատ այնչափ ուրիշ կոչում ունի, որչափ որ այլալեզու դրացիք կան իր շուրջը։ Այս տարբեր անուններու ծագումը զանազան պատճառներ ունի, որն որ շատ անգամ

ալ անկարելի է որոշ կերպով բացատրելը։ Ամենէն շատ գործածական եղած են այն կոչումներն, որ դրացի ժողովուրդները միմեանց կու տան, զիրար ստորնացընելու կամ գրգռելու համար։ Օրինակի համար. Աւարներն իրենց այս անունն առած են դրացի Կումիկներէն, որոնց լեզուով աւար կամ աբար՝ կը նշանակէ կռուասէր, անհանդարտ, որ շատ ճիշդ է։ Վրացիք նոյն ժողովրդին ցուննփա անունը կու տան որ կը նշանակէ՝ մուրացիկ։ Դաղստան ասուած նահանգի հիւսիսային մասի լեռնցիք Ռուսաց ծանօթ էին նախ՝ տաւլի անունով, որ Կումիքներէն էր հաղորդուած եւ կը նշանակէ՝ լեռնական։ Արագվա գեղի բարձունքի վրայ բնակող Վրացիք իրենց դաշտաբնակ ցեղակիցներէն Մթիուլ կը կոչուին, որ նոյնպէս լեռնցի ասել է։ Վրաց մի ուրիշ ցեղը՝ Խեւսուր կը կոչուի, որ կը նշանակէ ձորաբնակ. նոյն նշանակութիւնն ունի նաեւ Մոխեւի, որ Վրաց մի այլ ցեղի կոչումն է, որ Տէրէք գետի եղերքին վրայ կը բնակի։ Ջակատալեան գաւառի մէջ կը բնակին վրացի մահմետականներ, որոնց՝ Թաթարները Ինգիլո = Նորեկ կամ Նորադարձ անունն են տուած։ Ռուսաց ԺԶ—ԺԷ. դարերու դիւանագիտական թղթերուն մէջ, այն սարերու բնակիչներն, ուսկից Տէրէք գետը կ'անցնի՝ Մէս–խեթ կը կոչուէին։ Երբ Ռուսները Կովկաս մտան, սկսան գործածուիլ չէչէն եւ կիստ անունները. յետոյ երբ աւելի մօտ յարաբերութիւն հաստատեցին տեղացիներու հետ, նորանոր ժողովուրդներու անուններ սկսան յիշուիլ, ինչպէս՝

Գուլգայ, Գըլէգըլա, Ինգուշ, Կարաբուլաք, Նազրանցէ, Իչկէրցէ, Աուխցէ եւ այլն։ Բայց լեզուագիտական քննութիւնները կ'ապացուցանեն, որ բոլոր այս տարբեր անունները տարբեր ցեղեր չեն ներկայացըներ, այլ միեւնոյն ժողովրդի անունն է, որ առած է նա՝ իր դրացիներէն, նայելով նոյն ժողովրդին այս կամ այն մասի առանձնայատկութեան, գրաւած դիրքին, բնակութեան պայմաններուն եւ այլն։

Կաւկասեան լեռնականներէն՝ Օսերը՝ (նախկին Ալանները) կամ Օսէթինները, ինչպէս Վրացիներէն առնելով կը կոչեն Ռուսները, այժմ կը բնակին Վլատիկաւկասի հարթատեղիներու եւ Կաւկասու գլխաւոր շղթայի զառիվայրներու վրայ։ Ասոնք ալ իրենց տարբեր կոչումներն ունին՝ իրենց բնակած տեղերու համեմատ. Դիգորցէք, Ալագիրցէք, Կուրթաթինցէք, Տուալթանէր եւ այլն։ Օսերն, ինչպէս վերը յիշած ենք, անշուշտ կանխապէս Հիւսիսային Կաւկասի տափաստաններուն վրայ կը բնակէին, մինչեւ Դոնի գետեզերքը, եւ իրենցմէ աւելի ուժեղ ժողովրդէ նեղուելով դէպ ի լեռներն են մղուած, ուր այժմ կը բնակին այնպիսի ցեղերու մէջ, որոնց հետ ոչ ազգագրական եւ ոչ լեզուագիտական ոչ մի առնչութիւն ունին։

Կաւկասեան լեռնականներու մէջ յայտնի են եւ երբեմն մեծ թիւ կը կազմէին Չէրքէզները[1]։

---

1 Չէրքէզ անունը տաճկական տիրապետութեան ժամանակէն է տարածուած եւ հաւանականաբար կապ ունի հին ժամանակագիրներու (Ստրաբոն, Պլինիոս) կէրկէտ անուան հետ, զոր գործածած են նաեւ Ջենովացիք circassi ձեւով

Ասոնք իրենք զիրենք Ադիղէ կ'անուանեն, իսկ դրացի Օսերէն Կասագ կը կոչուին։ Չէրքէզներն ալ բազմաթիւ մանր ցեղերու կը բաժնուին, որոնք նոյնպէս զանազան կոչումներ ունին ըստ իրենց բարբառին եւ բնակավայրին։ Գլխաւոր ցեղն են Կաբարդինցի+, որոնք մի ժամանակ ուշադրութեան առարկայ եղած էին մի կողմէն Մոսկուայի Չարերուն եւ միւս կողմէն Խրիմի խաներուն, որոնք իրար հետ կը մրցէին այս լեռնցիներն իրենց կողմը գրաւելու նպատակով։ Խրիմեցիք մահմետական էին, Մոսկուացիք քրիստոնեայ. աստնցմէ իւրաքանչիւրը կ'աշխատէր իր կրօնը մուծանել Կաբարդինցիներու մէջ։ Խրիմեցիք այն ժամանակ թէ աւելի ուժեղ եւ թէ աւելի մօտ լինելով, յաջողեցան իրենց նպատակին հասնիլ եւ Չէր+էզները մահմետականութեան ենթարկեցին։ Կաբարդինցիներուն նուիրուած այս ուշադրութեան պատճառն այն էր, որ դէպ ի Կաւկաս տանող լեռնային գլխաւոր անցքերն իրենց ձեռքն էին եւ միանգամայն միւս դրացի լեռնցիներու վրայ մեծ ազդեցութիւն ունէին։ Չէրքէզներու մահմետականութիւն ընդունելովն՝ մրցումը չպակսեցաւ, այլ աւելի գրգռեց Ռուսներն, որոնք վերջ ի վերջոյ տապալեցին Թաթարաց իշխանութիւնն եւ բոլոր լեռնականներն հպատակեցուցին իրենց։ — Կաբարդինցիք մինչեւ հիմայ ալ ազդեցութիւն ունին Կաւկասեան միւս լեռնականներուն վրայ։ Հիւսիսային

---

որու իտալական հնչումէն առնուած կ'երեւայ չէր+էզ բառը. նոյն է նաեւ գաղղ. circassien.

Կովկասի բոլոր լեռնցիք, ինչպէս նաեւ Կազակ-ները, կաբարդինցիներէն առած են իրենց զգեստի, զինաւորման, ձիավարութեան ձեւերն եւ այլ բազմաթիւ սովորութիւնները, եւ մինչեւ հիմայ ալ ուշադրութեամբ կը հետեւին կաբարդինեան մօդայի բոլոր փոփոխութիւններուն: Չերքէսներու միւս ցեղերուն մէջ ծանօթ են՝ Աբխազներ, Բժեդուխներ, Շապսուղներ եւայլն, բայց այժմ անոնք շատ քիչ բազմութիւն կը ներկայացնեն համեմատելով իրենց նախկին թուին, որովհետեւ մեծ մասը գաղթած է Թիւրքիա եւ շարունակ ալ գաղթելու վրայ է:

Կովկասեան լեռնականներուն գլխաւոր բազմութիւնն այժմ ամփոփուած է Դաղստանի մէջ: Այս լեռնոտ նահանգն ինչպէս անունն ալ ցոյց կուտայ, կը տարածուի գլխաւոր լեռնաշղթային արեւելեան մասին շուրջը, եւ գրեթէ ամբողջ բնակուած է "լեռնցի" (горцы) կոչմամբ դրոշմուած ժողովրդով: — "Լեռնցիք" պէսպէս անուններով բազմաթիւ ցեղերու կը բաժնուին, բայց իրենց մի ընդհանուր լեզուն ենթադրել կուտայ, որ ընդհանուր ալ ծագում են ունեցած, գոնէ ցեղերու մեծագոյն մասը: Դաղստան նահանգին մէջ կը բնակին նախ՝ Չեչէնները, որոնք իրենք զիրենք Նախչի կը կոչեն: Չեչէն անունն առնուած է իրենց Չեչէն կամ Չաչան աւանէն, որ այժմ կործանած է: Այս լեռնականներուն բուն ծագումը նոյնպէս խաւարի մէջ է դեռ. Չեչէններու աւանդութեան համեմատ (նոյն աւանդութիւնն ունին նաեւ Կաբար-

դինցէք) իրենց նախահայրն արաբացի է եղեր Թուրքուլ անունով. բայց այս աւանդութիւնը մոռած կ'երեւայ իրենց մէջ մահմետականութեան տարածուելէն ետքն, ուստի որեւէ իրական հիմ դժուար է թէ ունենայ: Դաղստանի զանազան կողմերը տեսնուած հին եկեղեցիններու աւերակները ցոյց կու տան սակայն, որ քրիստոնէութիւնը բոլորովին օտար չէ եղեր այս կողմերը: Լեռնցիք այժմ ստուար մեծամասնութեամբ իսլամի հետեւող են, բայց կան իրենց մէջ այնպիսիներ, ինչպէս Ինգուշ ասուած ցեղը, որոնք ոչ բուն մահմետական են ոչ ալ քրիստոնէութիւնն են ընդունած, այլ պահած են հեթանոսական բարքերն ու սովորութիւններն եւ միեւնոյն ժամանակ եկեղեցիններու աւերակներուն վրայ զանազան ծէսեր կը կատարեն: Իսլամը կատարելապէս կրցաւ արմատանալ անցեալ դարու մէջ միայն. մանաւանդ դաշտաբնակ Չէչէնները շատ մոլեռանդ միւսլիման եղած են: Այս վերջինններն էին, որ ծնունդ տուին Շէյխ-Մանսուրին, այն նշանաւոր լեռնցի շէյխին, որ անցեալ դարուն վերջը Հիւսիսային Կովկասի բոլոր լեռնցիններն ոտք հանեց Ռուսաց դէմ: Շէյխ Շամիլ, որու վրայ արդէն խօսած եմ գրութեանս սկիզբը, միշտ հաւատարիմ ապաստանարան կը գտնէր Չէչէններու քով՝ իր քաղաքական գործունէութեան ծանր ու նեղ վայրկեաններուն: Եւ ռուսական բանակն այն ժամանակ միայն կարողացաւ ընկճել աննկուն լեռնցի շէյխն, երբ զգաց թէ հարկաւոր էր նախ Չէչէնները խոնարհեցընել.

այնպէս ալ եղաւ. Զէչէններու անթափանցելի կուսական անտառները մի առ մի տապարներու հարուածի տակ ընկան. զօրքն այն անտառներուն մէջէն մեծ նեղութիւններով ճանապարհ հարթեց իր համար եւ այնպէս կրցաւ յառաջանալ Շամիլի վրայ։ — Վերջին 1877/8ի ռուս-տաճկական պատերազմի ժամանակ դիւրահաւատ եւ պատերազմասէր Զէչէնները դարձեալ ապստամբեցան Ռուսաց դէմ, Թշնամի մահմետական պետութեան գործակալներու գրգռութեամբ, բայց այս անգամ իրենց ընդդիմութիւնը շատ տկար էր, եւ շուտով ընկճեցան։

Դաղստանի լեռնականներուն մեծագոյն մասը յայտնի է այժմ Լէզգի՝ ընդհանուր անուան տակ, բայց քննիչները կը համարին թէ այս պարագայի մէջ, այն ընդհանուր անունն անյարմար է, որովհետեւ ենթադրել կու տայ թէ անոնք ալ Զերքէսներու եւ Զէչէններու նման մի ընդհանուր լեզու կը խօսին, որ ճիշդ չէ։ Դաղստանի բնիկներուն մէջ առ նուազն վեց անկախ լեզու կայ, որոնց իւրաքանչիւրն ալ բազմաթիւ բարբառներ եւս ունի։ Բայց լեզուի կամ բարբառի միութիւնը լեռնցիներու մէջ քաղաքական միութեան նշան չէ։ Շատ անգամ տարբեր ծագում ունեցող ցեղեր, կամ աւելի ճիշդ՝ գիւղական կամ լեռնային հասարակութիւններ մի միութիւն կը կազմեն եւ մի լեզու կը խօսին. երբեմն ալ ասոր ճիշդ հակառակը՝ մի եւ նոյն ծագում ունեցող ժողովրդեան այլեւայլ մասերը տարբեր լեզու կը խօսին։ Բայց կայ այս լեռն-

ցիներու մէջ մի լեզու, որ միջազգային բարբառի դեր կը կատարէ իրենց համար, եւ հասկանալի է՝ նահանգին բոլոր լեռնական ցեղերուն։ Այս լեզուն՝ աւարերէնն է. այս է պատճառն, որ նոյն լեզուն խօսող լեռնցիներն ընդհանրապէս ալ Աւար կը կոչուին։ Իսկ Վրացիք՝ գլխաւոր լեռնաշղթային հիւսիսային զառիվայրին վրայ բնակող բոլոր լեռնցիներն, որոնց մէջ են եւ Աւարները, առ հասարակ Գլու-խօտոր կը կոչեն որ Քաջ կամ Քըլ կուրծք ունեցող ասել է։

Դաղստանի լեռնցիներուն մէջ մահմետականութիւնը մուտ գտաւ Ը. դարուն՝ Արաբներու արշաւանքով։ Անկէ վերջը պատմութիւնը բոլորովին կը լռէ իրենց վրայ մինչեւ ԺԸ. դար, երբ կ'իմանանք, որ Աւարներու խաները սաստիկ զօրացած անընդհատ յարձակումներով ահի եւ հպատակութեան տակ կը պահեն բոլոր Անդրկովկասեան նահանգները, մինչեւ այն ատեն՝ որ քանի մի պարսկական խաները, Ախալցխայի Թուրք փաշան եւ Վրաց Հերակլ Բ. արքան ստիպուած էին հարկ տալ լեռնցի խանին։ Աւարաց իշխանութիւնը տապալողն եղաւ Լազարեան զօրապետն, որ Ռուսաց բանակին գլուխն անցած, 1800 Նոյեմբեր 7ին մեծ ջարդ մը տուաւ իրենց։ — Աւարներէն վերջ կու գան Կազի-կումուխները, որոնց Սուրխայ խանը նոյնպէս մեծ կռիւներ մղած է Ռուսաց դէմ. մերթ հպատակած, մերթ իր հաւատարմութեան երդման դրժած, եւ վերջապէս 1819ին կատարեալ ապստամբութիւն է յայտնած։ Անհնազանդ

լեռնցին պատժելու համար 1820ին ուրիշ հայ զօրապետ մը՝ իշխան Մադաթեան դիմեց Կու-մուխ, խանին բնակավայրը, եւ անոր հրոսակախումբը մեծ կոտորածով ցրուելէ ետքը, ամբողջ ցեղը հպատակեցուց եւ Սուրխայան ալ զրկելով խանութենէն, տեղը ուրիշ մը դրաւ: Կազիկումուխներուն խօսած լեզուն լաքերէն կը կոչուի[1]:

Կովկասագէտները քննելով այս լեռնականաց լեզուները՝ կը հաստատեն, որ անոնք այս նահանգէն դուրս ուրիշ լեզուներու հետ ազգակցութիւն չունին, այլ անկախ լեզուական խումբեր կը կազմեն: Լեզուային այս կղզիացման, ինչպէս եւ այլ աշխարհագրական հանգամանքի վրայ հիմնուելով՝ վերջնականապէս հերքուած կը համարին այն կարծիքը թէ Կովկասեան պարանոցն իբրեւ կամուրջ է ծառայած ազգաց գաղթականութեան համար, Ասիայէն դէպ ի Եւրոպա: Ասոր հակառակ հաւանական կը համարին այն ենթադրութիւնը՝ թէ այժմեան Կով-

---

1 Հիւսիսային Կովկասի Դաղստան կոչուած նահանգի մէջ՝ 1886ի ազգահամարին համաձայն 592.780 բնակիչ կար: Այս վիճակագրութեան մէջ 28 լեռնական ցեղ է հաշուուած, որոնց գլխաւորն են՝ ըստ իրենց բազմութեան,

| | |
|---|---|
| Ավարները | 119.711 |
| Դարգինցիք | 117.168 |
| Կիւրինցիք | 103.288 |
| Կումիքներ | 60.836 |
| Կազիկումուխներ | 48.316 եւն. |

Կան ցեղեր, որոնք այժմ հազիւ քանի մի հազար հոգի կը բովանդակեն: Այսպիսիները շարունակ պակսելու վրայ են:

Ոչ-լեռնցի բնակիչներու մէջ ամենէն բազմաթիւն են Ատրպատականի Թիւրք-Թաթարները եւ Պարսիկները, յետոյ կուգան Հրեաները (9210 հոգի) Ռուսներ 5420: Ամբողջ նահանգի մէջ Հայոց թիւն 1054 է. ասոնք ալ Դերբենդ եւ Պետրովսկ ծովեզերեայ քաղաքներու մէջ կը բնակին (Կասպից ծովի վրայ): Ռուսաց մեծ մասը նոյնպէս քաղաքներու մէջ է խմբուած:

կասեան լեռնաբնակներն աննշան մնացորդներն են այն նախնական ցեղերու, որոնք, ինչպէս վերն յիշեցինք, նախ Կաւկասի հիւսիսային կողմն, ընդարձակ դաշտավայրերու վրայ էին հաստատուած, ուսկից զօրեղագոյն ցեղերու հալածումը բերած նետած է զիրենք այն «սար ու ձորի» մէջ։ Ուստի իբր ճիշդ պէտք է ընդունիլ Ուսլարի ասածը թէ՝ «Կաւկաս՝ ո՛չ թէ ժողովուրդներու գաղթականութեան ճանապարհն, այլ հարթավայրերու մէջ նեղուած եւ հալածուած ցեղերու ապաստանարանն է եղած»։ Իսկ այն նեղող եւ հալածող ժողովուրդն եղած են հաւանականաբար Ուրալ-Ալթայեան ցեղերն, որոնք Իթիլ-օթէսինտէն, այսինքն Վոլգա գետին միւս կողմէն, եւ Արաս-օթէսինտէն, այսինքն Պարսկաստանէն գալով, դէպ ի Կաւկասեան լեռնային պարանոցն են դիմած եւ բոլոր բնիկներն իրենց առջեւէն քշելով, իրենք գրաւած են այն բոլոր հարթավայրերն, որոնք տուարածական ժողովրդեան համար որոշ դիւրութիւններ կը ներկայացնէին։ Այս թաթարական ցեղերն այժմ կը բնակին՝ Հիւսիսային Կաւկասի դաշտավայրերու, Կասպից ծովի արեւմտեան եզերքի եւ Անդրկաւկասի բոլոր դաշտային տեղերու եւ բարձրագաւառներու վրայ։ Այս Մոնգոլական ծովին մէջ իբրեւ կղզի կը բարձրանայ Մեծ Կաւկասի իրանն, որու վրայ ապաստանարան գտեր են նեղուած զանազան լեռնական ցեղերն եւ Վրացիք։

Աւելորդ է կարծեմ ասել, որ մեր յիշած լեռնական ցեղերէն ոչ մէկուն լեզուն ունեւէ գրա-

կանութիւն ունի։ Այս լեզուներն եւ առանձին բարբառները կը պահպանուին շնորհիւ այն պարագային, որ խօսողներն իրենց անմատչելի ձորերուն մէջ եւ սարերու գլխին կղզիացած կամ բնաւ կամ շատ քիչ են ենթարկուած եղեր կրթիչ ոյժ ներկայացընող որեւէ զօրեղ օտար տարրի։ Հաւանական է, որ ռուսական քաղաքակրթութեան տարածմամբ լեռնական լեզուներն սկսին վերջ ի վերջոյ պակսիլ եւ տեղի տալ պետական ռուս լեզուին. բայց այս փոփոխութիւնը դեռ դարերու երկար շարքի կարօտ է, որովհետեւ Կովկասի մէջ դպրոցական կրթութիւնն եւ ռուսերէնի գիտութիւնը յաջողութեամբ կը տարածուի միայն Հայոց եւ Վրաց մէջ, իսկ շատ աւելի բազմաթիւ մահմետական ժողովուրդը, մանաւանդ լեռնականները՝ դեռ վերջին աստիճանի խուլ են քաղաքակրթութեան գործին. եւ ցեղական կղզիացումներու հին սովորութիւնը ըստ երեւութին երկար ժամանակ իր ոյժը պիտի պահէ ի վնաս ընդհանրութեան շահերուն։ Յամենայն դէպս բացի լեզուական առանձնայատկութենէ, այն նախնական ձեւի վարք ու բարքն եւ հասարակական, ընտանեկան կազմակերպութիւնն որ ունին եւ կը պահպանեն Կովկասի լեռնականները՝ նոյնպէս դեռ հետազօտուած չեն. եւ ասոնց ուսումնասիրութիւնը գիտութեան համար աննշան հետաքրքրութիւն չի ներկայացըներ։

Կովկասեան լեռնականներու թուին մէջ Վրացիք եւս իրենց բաժինն ունին։ Վրացի-լեռ-

նական ցեղերը 35.000ի չափ կան, եւ կը կոչուին Խէվսուր, Տուշին եւ Պշավ։ Ասոնք կը բնակին Արագվա գետին շրջակայքն, մօտաւորապէս այն տեղերը, ուր մենք ընդհատեցինք մեր լեռնային ուղեւորութեան պատմութիւնը։ Հազիւ թէ գտնուի ուրիշ լեռնցի ժողովուրդ, որ հակառակ իր փոքր թուին, այնպէս երկար ժամանակ եւ այնչափ քաջութեամբ պահպանած լինի իր անկախ գոյութիւնը, մէկ կողմէն դրացի մահմետական լեռնաբնակներու եւ միւս կողմէն բուն Վրաց թագաւորութեան դէմ։ Այս կռուող ոգին եւ անկախութեան սէրն ստիպեր է զիրենք երբեք չթողուլ կենդրոնական լեռնաշղթայի անմատչելի ձորերն, ուր ապաստաններ են ի սկզբանէ, եւ իրենց այս բազմադարեան միօրինակեայ կեանքն եւ խիստ կղզիացումը անթափանցելի կիրճերու մէջ, զիրենք վայրենութեան վիճակին է հասուցած։ Վրացի-լեռնականները՝ մանաւանդ Խէվսուրները՝ թէեւ քրիստոնեայ կը համարուին, բայց իրենց քրիստոնէութիւնը քանի մի արտաքին ծէսերու կատարմամբ կը վերջանայ․ իրապէս այս կիսավայրենի ցեղը կը շարունակէ դեռ իր խորունկ եւ անմատչելի ձորերու մէջ հնադարեան հեթանոսական հայեացք եւ համոզումներ դաւանել[1]։ Ասոնց խօսած լեզուն վրացերէնի մի բարբառն է։

1 Հեթանոսական կրօնը դեռ բազմաթիւ հետեւողներ ունի Կաւկասի մէջ։ 1886ի վիճակագրութեան համաձայն կռապաշտներու թիւն է 23.944 հոգի, որոնց 12.495ը Հիւսիսային Կաւկասի, իսկ մնացածը Անդրկաւկասի մէջ։

## Ը.

Այժմ քանի մի խօսք ալ ռազմավիրական ճանապարհի՝ մինչեւ Տփղիս մնացած մասին վրայ:

Դուրս կ՚ելլենք Անանուրի կայարանէն, վերջին ակնարկ մը նետելով Անանուրին, որու կիսաւեր մեծ բերդն[1] իր մէջի երկու փոքր եկեղեցիներով եւ տեղական իշխան՝ Իչքափուլներ (փոխարքայ) պալատի աւերակները՝ վրական անցեալ իշխանութեան մթին յիշատակները կը մնան: Քիչ վերջը ճանապարհն Արագվայի հովիտը թողլով սկսաւ դէպ ի վեր բարձրանալ — Դուշէթի սարերուն վրայ: Փոխանակ խիտ անտառներու, այնուհետեւ լերկ դաշտերու մէջէն կ՚անցնինք. տեղ տեղ միայն՝ մեր առջեւ կ՚ելլեն վրացի եւ օս գիւղեր, ողորմելի շինութիւններով: Բարեբախտաբար այս բարձրացումն երկար չտեւեց եւ երբ մենք $2^1/_2$ ժամ վերջը՝ Դուշէթ հասանք, մեր կառքին՝ 6ի տեղ 4 ձի լծեցին, որ նշան էր թէ ա՛լ վառ ի վեր պիտի չունենայինք:

Դուշէթ՝ փոքրիկ քաղաք է 2000 բնակչով, համանուն կայարանէն $^1/_2$ քիլոմէտր անդին: Հեռուանց դիտողի համար քաղաքին ամենէն աւելի աչքի զարնող մասը՝ կարմիր շէն-

---

1 Պարսիկ հեղինակներն այս բերդը՝ Կարա-կալկան-կալա կը կոչեն, այսինքն «Սեւ վահաններու բերդ»: Խեւսուր եւ Պշավա լեռնական Վրացիք, որոնք տէրն էին այս բերդին, կարա-կալկան անունն էին ստացած պարսիկներէն, երեւի սեւ վահան կամ այլ պաշտպանողական որեւէ զէնք, գործածելնուն համար:

քերու երկար շարքն է։ Այս շէնքերը զօրանոց են “կավ—կասեան փեղակեան գծերէ„ 4ր գունդի համար։ Սա՝ այն գնդերէն մէկն է, ուր զէնքի տակ են Կաւկասի բնիկ ժողովրդէն առնուած զինուորները։ Այս գնդերու մէջ են նաեւ ռուսական բանակի հայ զինուորները։

Դուշէտէն վերջը մեր ճանապարհին աջ կողմն երեւան կ'ելլէ փոքրիկ լիճ մի, որու մէջ մեծ առատութեամբ տզրուկ կ'որսան տեղացիք։ Հետեւեալ կայարանը Ցալկան կամ Ծալկան կը կոչուի։ Երբ կը սկսինք այս կայարանին մօտենալ, մեր առջեւ դարձեալ կը պարզուի Արագվայի սքանչելի հովիտն, որու երկու կողմի բարձունքը՝ մինչեւ գետեզերք՝ մշտադալար անտառներով է ծածկուած եւ շատ սիրուն տեսարաններ կ'ընծայէ դիտող աչքերու։ Այսպէս կը շարունակուի մինչեւ Մցխէթ։ Օրը խոնարհած էր արդէն երբ հասանք Մցխէթ, որ մեր վերջին կայարանն էր դէպ ի Տփղիս։ Այստեղ քաղաքի հոտ կը տիրէր արդէն։ Կայարանի սեղանատան մէջ առիթ ունեցանք նոյն օրուան հայերէն եւ ռուսերէն լրագիրները կարդալ։

Այս կայարանն իր անունն առած է մօտակայ գիւղէն։ Երբ մարդ կը դիտէ այս գիւղն՝ իր տափակ տանիքով հիւղերովն եւ իր այժմեան ողորմելի վիճակը, չի կրնար մտքէն անցընել թէ նա երբ եւ իցէ արթայանխոփ թաղաք եղած լինի։ Եւ սակայն՝ Մցխէթ կամ Մցխէթա՝ Վրաց մայրաքաղաքն էր մինչեւ Ե. դարու վերջն, երբ Վախթանգ Գուրգասլան թագաւորն իր բնակատեղին

փոխադրեց Տփղիս։ Բայց անշուշտ արքայանիստ եղած ժամանակ այստեղն աւելի ընդարձակ էր եւ համեմատաբար աւելի փայլուն։ Ե. դարէն սկսած այս գիւղը Վրաց կաթողիկոսի բնակավայրն է եղած։ Մցխեթի անցեալ մեծութեան վկայ է իր նշանաւոր եկեղեցին յանուն "Ժբ. Առաքելոց", որ կառուցուած է եղեր նախ Դ. դարու մէջ, եւ այնուհետեւ քանի մի անգամ թշնամեաց յարձակումներու ենթարկուելով կործանուած եւ դարձեալ նորոգուած է։ Այժմեան շինութիւնը ԺԵ. դարէն է (1440)։ Վրաց աւանդութեան համեմատ, տաճարը շինուած է ճիշտ այն տեղի վրայ, ուր թաղուած է եղեր Քրիստոսի պատմուճանը։ Մցխեթի հրեաներէն մէկն իր քրոջ՝ Սիդոնիային ընծայ է բերեր Երուսաղէմէն այս վերարկուն։ Բայց Սիդոնիա զայն իր ձեռքն առնելուն պէս իսկոյն վար է ինկեր մեռեր է, եւ ապա գետինը պատառուելով պատմուճանին հետ թաղուեր է հողի մէջ։ Պատմուճանին գտնուած տեղն այնուհետեւ մեծ եղեւնի ծառ է բուսեր, ուսկից բուժիչ մեռոն կը հոսէ եղեր։ Տաճարը շինելու ժամանակ այս ծառը ստիպուեր են կտրել եւ անոր փոխարէն քառանկիւնի քարաշէն սիւն են կառուցեր, որ մինչեւ հիմայ կանգուն կը մնայ եկեղեցւոյն մէջ եւ ամբողջապէս ծածկուած է հին նկարներով եւ բարեպաշտական ընծաներով, ինչպէս՝ վարշամակներ, պատկերներ եւայլն։ Այժմ այնտեղէն այլ եւս մեռոն չի հոսեր, ինչպէս եւ պատմուճանն ալ անշուշտ հեռացած կը լինի.

(Պարսիկներն են իբր թէ վերուցեր)։ Եկեղեցւոյն մէջ բազմաթիւ հին վրական յիշատակներ կան, որոնց մէջ արժանի են յիշուելու՝ շատ հին, 12 առաքելոց "չարչարանքի" պատկեր մը կիպարիս փայտի վրայ քանդակուած։ Սրբոց Նուիրական մասունքի հաւաքածոյ մը 88 կտորէ բաղկացած, որոնց մէջ՝ մեր ուղեցոյց վրացի սարկաւագը ցոյց տուաւ մեզ 2 մաս, որոնք՝ ըստ աւանդութեան Փրկչին արեան մի կաթիլն եւ գլխի մի մազն են եղեր։ Խորանի առջեւի սիւնի տակ շինուած է կաթողիկոսական գահոյքն եւ քիչ աւելի վար թագաւորին նստելու տեղն, երկուքն ալ քարէ եւ բաւական պարզ ու անճաշակ։ Եկեղեցւոյ մի անկիւնը փոքր դամբան մը կայ, որու մէջ կամ տակը կը պահուի եղեր Եղիա մարգարէի ոչխարի մորթէ վերարկուին մէկ կտորը։ Մի ուրիշ անկիւնը՝ քարէ աւազան մը կայ, ուր Վրաստանի քարոզիչ Սրբուհի Նինո կամ Նունէ մկրտեր է Վրաց առաջին քրիստոնեայ թագաւոր Միրիանը։ Եկեղեցւոյ մէջ են թաղուած Վրաստանի Բագրատունեաց ցեղի թագաւորներն, որոնց սեռը վերջանալէն ետքը՝ թաղուելու կարգն եկեր է իրենց մերձաւոր ազգական Բագրատիոն-Մուխրանսկի իշխաններու։ Այս արքայական գերեզմաննոցի մէջն է նաեւ Վախթանգ Գուրգասլանի աննշան դամբանը։ Երկու արքայական գերեզմանի վրայ միայն պատշաճաւոր տապանաքար եւ արձանագրութիւն կայ, որ դրուած է Ռուսաց կայսր Աղեքսանդր Ա.ի հրամանով։ Այդ գերեզմանները Վրաց վերջին

թագաւորներու՝ Հերակլ Բ.ի († 1798) եւ Գէորգի ԺԲ.ինն († 1800) են։ Այս թագաւորներն էին, որ իրենց հօրենական ժառանգութիւնը՝ Վրաստանն, այլ եւս չկարողանալով կառավարել Պարսից անընդհատ յարձակումներու դէմ՝, իրենց արքայական իշխանութիւնն եւ իրաւունքը յանձնեցին Աղեքսանդր Ա. կայսեր։ — Ուշադրութեան արժանի է նաեւ ԺԲ. Առաքելոց պատկերն, որ քանդակաձեւ նկարուած է պատի վրայ եւ 12 ճառագայթներով հովհարի (éventail) ձեւ ունի։

Մցխէթի այս մայր եկեղեցին մեծ յարգանք կը վայելէ ամբողջ Վրաստանի մէջ եւ ամէն տարի Հոկտեմբերի 1ին, եկեղեցւոյ տօնի օրն, ուխտաւորներու ահագին բազմութիւն մը կը թափուի ամէն կողմէն, որոնք Հոկտ. 1 լուսնալու ամբողջ գիշերը հսկումով, եւ աղօթքով կ՚անցընեն։ Այն ժամանակ կարելի է տեսնել վրաց բազմաթիւ ցեղերու բոլոր ներկայացուցիչներն իրենց ազգային գոյնզգոյն տարազովը զարդարուած։ Այս մեծ տօնախմբութեան հաւասարապէս կը մասնակցին նաեւ դրացի ցեղերը՝ հայ, ռուս եւ այլն։ Մցխէթի մէջ Հայերն ալ ունին փոքր եկեղեցի մը՝ Կուր գետի ափին վրայ, որ նոր է համեմատաբար եւ նշանաւոր ոչինչ ունի։ Ուրիշ հին եկեղեցի մը կայ Մցխէթի դիմացը, սարին բուն գագաթին վրայ, ուր, ըստ աւանդութեան, առաջին անգամ տնկեր է Սրբ. Նունէ քրիստոնէական խաչը։ Այս եկեղեցւոյ շինութիւնը կը վերագրուի Է. դարու։

Գիւղին դիմացը՝ Կուրի միւս եզերքի վրայ կը բարձրանայ լեռնաշղթայ մը՝ Քարթլի անունով։ Աւանդութեան համեմատ՝ այնտեղ է թաղուած առասպելական Քարթլոսը կամ Կարթլոսն, Վրաց նախահայրն, որու անունով ալ իրենք Քարթուլի կը կոչուին։ Սա ճիշդ այն է Վրաց համար, ինչ որ Հայկը մեզ համար։

Ով որ ռազմավիրական ճանապարհով Վլադիկաւկասէն Մցխեթ կու գայ, կրնայ այստեղ հրաժեշտ տալ իր կառքին եւ Տփղիս մտնել երկաթուղիով, որու կայարանն ալ հեռու չէ գիւղէն։ Միայն թէ հարկ կը լինի 2—3 ժամ սպասել, մինչեւ որ շոգեկառքն, որ առաւօտ ելած է Բաթումէն, Մցխեթ հասնի։ Սակայն շատ քիչերը կ'ընտրեն այս միջոցը։

Մցխեթէն մինչեւ Տփղիս դեռ եւս 21 քիլոմէտր կայ։ Այս ճանապարհն անով է նշանաւոր, որ այստեղ հնագիտական մեծ արժէք ունեցող գիւտեր եղած են։ 1871ի պեղումներու ժամանակ այստեղ հին գերեզմաններ են գտնուած՝ երկու կարգ, որոնց մէկը քրիստոնէութեան ժամանակէն, իսկ միւսը հեթանոսական, Ք. Ե Ժ.—ԺԱ. դար յառաջ։ Այս վերջին կարգի գերեզմաններէն հանուած են բաց ի մետաղեայ եւ այլ զանազան հին առարկաներէ, նաեւ գանգեր եւ մինչեւ անգամ ամբողջ մարդկային կմախքներ, որոնք, ինչպէս քննութիւնը ապացուցած է, կը վերաբերին Կովկասի նախապատմական ժամանակի (երկայնագլուխ) բնակիչներուն

եւ որոնց սերունդն այժմ այլ եւս Կաւկասի ոչ մի կողմը չ'երեւար։

Ժամը 6 էր երբ Մցխէթէն մեկնեցանք եւ ճիշդ 8ին հասանք վերջապէս Կուրի այն կամուրջն, որ ռազմավիրական ճանապարհը կը կապէ Տփղիսի հետ։ Սիրուն գիշեր էր, քաղաքը մանրիկ լոյսերով կը փայփլէր, եւ մեր կառքն արագաբար անցնելով այս Վէրայի կամուրջն, փոքրիկ զառիվերէ մը վերջը կը մտնէր Տփղիս։ Այստեղ ուղեւորի աչքին հանդիպող առաջին ուշագրաւ առարկան՝ երկաթէ մեծ խաչ մի է, գրանիտէ պատուանդանի վրայ հաստատուած, քաղաքին մուտքին վրայ։ Ինչպէս խաչի վրայի արձանագրութիւնը կը պատմէ, Ռուսաց Նիկոլայ Ա. կայսրը 1837ին՝ Կաւկասէ Ռուսաստան դարձած ժամանակ, երբ կառքով դուրս կ'ելլէր Տփղիսէն, ճիշդ այդ տեղն, յանկարծ ձիերը կ'ահաբեկին, կառքը կը դառնայ եւ կայսրը վար կ'ընկնի բարեբախտաբար որեւէ ծանր վնաս չի կրեր եւ կարող կը լինի իր ճանապարհը շարունակել։ Ի յիշատակ այս դէպքի՝ քաղաքն այս խաչն է կանգներ այնտեղ։

Անցանք Օլգինսկայա փողոցն եւ ապա Տփղիսի ամենալաւ փողոցը՝ Գօլօվինսկի պրօսպեկտ, ուր՝ մեր կառքն իր վերջնական կայարանի առջեւ կանգ առաւ եւ մեզ արձակեց մեր տները։ — 29 ժամ էր անցած Վլադիկաւկասէն մեկնելէն ի վեր։



